# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Քաղաքական գրականության պետական հրատարակչությունը (Մոսկվա) ռուսերեն լեզվով լույս է ընծայել.

## ՌԿ(բ)Պ VII ԱՐՏԱԿԱՐԳ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

### Սղագրական հաշվետվություն

*Ավելի քան 400 էջ մեծածավալ այս գրքում ամփոփված են պարտիայի VII արտակարգ համագումարի բոլոր նյութերը: Ինչպես հայտնի է համագումարը հրավիրվեց 1918 թվականի մարտ ամսին, երբ հատկապես սրվեց հաշտության և պատերազմի հարցը: Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցությունները լուրջ տարաձայնություններ են առաջ բերել պարտիայի Կենտկոմում և որոշ կազմակերպություններում: Պարտիայի լենինյան գծին հակադրվող «ձախ կոմունիստները» և Տրոցկին պարտություն կրեցին: Հաղթեց համագումարի լենինյան ոգին:*
*Կենտկոմի քաղաքական հաշվետվության, պատերազմի ու հաշտության, պարտիայի Ծրագրի վերանայման և պարտիայի անվանակոչման հարցերի մասին զեկուցեց Վ. Ի. Լենինը: Սղագրական հաշվետվության նյութերը կարդացվում են մեծ հետաքրքրությամբ:*

## ՀամԿ(բ)Պ XV ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

### Սղագրական հաշվետվություն

*Լույս ընծայվեց ՀամԿ(բ)Պ XV համագումարի սղագրական հաշվետվությունը: Պարտիայի 1927 թվականի դեկտեմբերին կայացած այս համագումարը կարևորագույն տեղ է գրավում ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման պատմության մեջ: Հաստատելով առաջին հնգամյա պլանի կազմման դիրեկտիվները, համագումարը նշեց սոցիալիզմի կառուցման կոնկրետ ուղիները մեր երկրում: Սահմանելով սովետական գյուղի զարգացման սոցիալիստական ուղին, համագումարն իրավամբ կոչվեց կոլեկտիվացման համագումար: Ավարտելով տրոցկիստական-զինովևյան հակապարտիական օպոզիցիայի գաղափարական և կազմակերպական ջախջախումը, այդ համագումարը ավելի ամրապնդեց պարտիայի լենինյան միասնությունը, որը սոցիալիզմի և կոմունիզմի հաղթության գլխավոր գրավականն է:*

## ՀամԿ(բ)Պ XVI ԿՈՆՖԵՐԱՆՍ

### Սղագրական հաշվետվություն

*ՀամԿ(բ)Պ XVI կոնֆերանսի սղագրական հաշվետվությունը և նրա հետ առընչված այլ նյութերը ընդգրկող այս մեծածավալ գրքում հիմնական նյութը վերաբերում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացման առաջին հնգամյա պլանին: Կոնֆերանսում տրված զեկուցումներում, արտասանած ճառերում և ընդունված որոշումներում ցայտուն կերպով երևում են սոցիալիզմի կառուցման դժվարին և կոնկրետ ուղիները մեր երկրում:*

## «ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ»

*Նոր լույս տեսած այս գրքույկը (հեղինակներ՝ Կոսուլապով Ս. Մ. և Կրուտովա Օ. Ն.) բավականին աշխույժ ոճով պրոպագանդում է կոմունիզմի բարոյականության մի քանի կարևոր պրոբլեմներ: Այս գրքույկում կյանքից վերցրած բազմաթիվ փաստերով, հեղինակները ցույց են տալիս սովետական նոր մարդու ծնունդը, զարգացումը և նրան արգելակող պատճառները: Գրքույկը կօգնի պրոպագանդիստներին և ագիտատորներին իրենց առօրյա գործունեության մեջ:*

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1962 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԸ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*

Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մասնակից երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների Կենտրոնական Կոմիտեների առաջին քարտուղարների և կառավարությունների ղեկավարների Մոսկվայի Խորհրդակցությունը, որը հրավիրվել էր Լեհաստանի Միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի նախաձեռնությամբ 1962 թ. հունիսին, մի խոշորագույն իրադարձություն է սոցիալիստական համագործակցության ժողովուրդների կյանքում: Այդ Խորհրդակցությունը անտարակույս կարևոր դեր կխաղա սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման և համաշխարհային զարգացման վրա նրա ազդեցության ուժեղացման գործում:

Խորհրդակցության ուշադրության կենտրոնում էին Տնտեսական Փոխօգնության Խորհրդի անդամ պետությունների տնտեսական համագործակցության հրատապ պրոբլեմները, որոնք արտահայտում են ինչպես առանձին երկրների, այնպես էլ ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի արմատական շահերը: Այդ պրոբլեմները բխում են ամենից առաջ համաշխարհային սոցիալիզմի զարգացման ներքին պահանջներից, ինչպես նաև կապիտալիզմի հետ մրցության մեջ մեր գերականցությունն ապահովելու անհրաժեշտությունից: Դրանց լուծումը հզոր ազդակներ կստեղծի արտադրողական ուժերի հետագա վերելքի համար, իրենով նշանավորելով մի կարևոր քայլ նոր կյանք կառուցող ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը ամրապնդելու գործում, դեպի մեր ընդհանուր վսեմ նպատակը տանող ճանապարհին:

Վ. Ի. Լենինը սոցիալիստական ժողովուրդների ապագա համագործակցությունը պատկերացնում էր որպես մեկ միասնական համաշխարհային կոոպերատիվ, որտեղ տնտեսությունը վարվելու է ընդհանուր պլանով: 1918 թվականին բանվորական կոոպերացիայի III համագումարում արտասանած իր ճառում նա ասում էր, որ «այժմ մի բան է հարկավոր, որպեսզի միայն միահամուռ ձգտում լինի անկեղծ հոգով մտնելու այդ համաշխարհային միասնական կոոպերատիվի մեջ» (Երկեր, հ. 28, էջ 425):

Մեր առաջնորդի և ուսուցչի այս խոսքերում արտահայտված է այն վերջնական նպատակը, որին ձգտում են բոլոր սոցիալիստական երկրները, բանվոր դասակարգի ամբողջ համաշխարհային ռևոլյուցիոն շարժումը: Բայց «ժողովուրդների համաշխարհային կոոպերատիվի» ստեղծումը տևական, բարդ և բազմակողմանի պրոցես է: Դրա գլխավոր բովանդակությունը ո՛չ միայն մեր երկրների անշեղ, բայց

առ քայլ իրականացվող տնտեսական կոոպերացումն է, այլև սոցիալիստական ժողովուրդների գաղափարական, քաղաքական և կուլտուրական մերձեցումը, որի ընթացքում վերջնականապես կանհետանան կապիտալիզմի ծնունդ հանդիսացող անվստահությունն ու ազգերի խորթությունը և լիովին կհաղթանակի եղբայրության, բարեկամության և համագործակցության ոգին:

Այդ նպատակին հասնելու ճանապարհին մեզ վիճակված կլինի անցնել մի շարք հաջորդական էտապներ, որոնց շրջանցել անհնարին է: Միասնության այն բարձր աստիճանին հասնելու համար, առանց որի անկարելի է նույնիսկ պատկերացնել սոցիալիստական ժողովուրդների ապագա համատեղ կյանքը, հարկավոր է համառ աշխատել ամենաայլազան մեծ ու փոքր բազմաքանակ պրոբլեմների լուծման վրա:

Դեռևս կապիտալիզմի գոյացման ընթացքում արտադրողական ուժերի զարգացումը քայքայում էր տեղական, իսկ հետո նաև ազգային ինքնամփոփությունը: Կապիտալիստական հիմքի վրա առաջացան արդեն կայուն միջազգային կապեր, որոնք շարունակ աճում ու զարգանում են: Միասնական, բոլոր ազգերի պրոլետարիատի կողմից մի ընդհանուր պլանով կարգավորվող համաշխարհային տնտեսության՝ որպես մի ամբողջության ստեղծման տենդենցը «միանգամայն ակնհայտորեն դրսևորվել է արդեն կապիտալիզմի օրով և անպայման ենթակա է հետագա զարգացման ու լիակատար ավարտման սոցիալիզմի օրով»,— մատնանշում էր Լենինը (Երկեր, հ. 31, էջ 168): Համաշխարհային էկոնոմիկայի միասնության օբյեկտիվ անհրաժեշտությունը ամենից ավելի խոր կերպով արտահայտում է հասարակության հիմնական արտադրողական ուժը՝ բանվոր դասակարգը, որը դասակարգային պայքարի ընթացքում հզոր հասարակական ուժ է դառնում:

Սովետական Միությունում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ ստեղծվեց ամբողջ հասարակության իսկական սոցիալ-տնտեսական միասնությունը, հասարակություն, որը դարձել է բոլոր հիմնական արտադրամիջոցների լիիշխան տերը: Այդ հիմքի վրա առաջացել է սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը:

Այժմ մեկ երկրի սահմաններից սոցիալիզմի դուրս գալուց հետո տեղի է ունենում մարդկության պատմության մեջ չտեսնված այն պրոցեսը, երբ աշխատավորները միավորվում են պայքարելու նոր հասարակարգ կառուցելու համար մի ամբողջ համաշխարհային սիստեմի շրջանակներում: Անցած մեկ ու կես տասնյակ տարիների ընթացքում, երբ ստեղծվում էին ժողովուրդների միջև նոր հարաբերությունների հիմքերը և կազմավորվում էին սոցիալիզմի երկրների համակողմանի համագործակցության ձևերը, այդ պրոցեսը, իսկապես ասած, նոր էր միայն սկսվում: Սոցիալիզմի երկրներում դեռևս մնում են դասակարգեր, թեպետև նրանք բարեկամ դասակարգեր են, երկար ժամանակ պահպանվում են ազգային առանձնահատկությունները, ընդ որում առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվում ազգերի ծաղկման համար: Հետևաբար, դեռևս պահպանվում են ազգային և որոշ չափով էլ դասակարգային շահերն ու տարբերությունները: Բայց դրա հետ մեկտեղ գնալով ավելի մեծ նշանակություն է ստանում այն գլխավորը, վճռականը, որ միավորում ու հարազատ է դարձնում նոր կյանքի կառուցման ուղին թևակոխած բոլոր մարդկանց, անկախ նրանց դասակարգային ու ազգային պատկանելիությունից, այն է՝ նրանց ընդհանուր շահերը միջազգային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի ու ամրապնդման համար մղվող պայքարում, նրանց ընդհանուր մարքս-լենինյան գաղափարախոսությունը:



Քաղաքական նպատակների և շահերի այդ մեծ ընդհանրությունը, որը խարսխված է մարքս-լենինյան ուսմունքի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների գրանիտե հիմքի վրա, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կայունության հունալի երաշխիքն է, այն հիասքանչ հաջողությունների գրավականը, որ ձեռք է բերելու սոցիալիզմը:

## 1. ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԱՍՏԻՃԱՆԸ

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն իր զարգացման մեջ անընդհատ կատարելագործվում է, իսկ դրա հետ մեկտեղ կատարելագործվում են նաև մեր երկրների կապերի ու համագործակցության ձևերը: Սոցիալիստական ռևոլյուցիաների հաղթանակից հետո մեր բոլոր երկրների ժողովուրդները, բնականորեն ձգտում էին միավորել ուժերը իրենց նվաճումները պաշտպանելու համար: Այդ ժամանակաշրջանում գլխավորը համախմբվելն էր քաղաքական տեսակետից, նպատակ ունենալով ամրապնդել ժողովրդական իշխանությունը, սոցիալիստական իրավակարգը յուրաքանչյուր երկրի սոցիալ-տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում, կազմակերպել սոցիալիզմի երկրների համատեղ պաշտպանությունը իմպերիալիստական հնարավոր ագրեսիայից: Դա ըստ էության սոցիալիստական պետությունների ռազմա-քաղաքական միությունն էր:

Ամբողջ համաշխարհային սիստեմի մասշտաբով հաստատվեց մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն դրույթներից մեկը, որի համաձայն արտադրության սոցիալիստական եղանակը կարող է ծագել և զարգացման լայն ասպարեզ ստանալ այն բանից հետո միայն, երբ աշխատավոր մասսաները բանվոր դասակարգի գլխավորությամբ սոցիալիստական ռևոլյուցիայի ընթացքում նվաճում են քաղաքական իշխանությունը և կազմակերպում իրենց նվաճումների պաշտպանությունը հակառևոլյուցիայի գրոհներից:

Տնտեսական տեսակետից, առանձնապես միջազգային տնտեսական կապերի բնագավառում Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները կարծես թե կապիտալիստական աշխարհից պոկված բեկոր էին: Այդ երկրներում սոցիալիստական հարաբերությունները միանգամից չհաղթանակեցին: Նրանց տնտեսությունը բազմակացութաձև էր և պահպանում էր կապիտալիզմից ժառանգություն մնացած հակասությունների ու արատների խոր հետքերը: Ժողովրդական դեմոկրատիայի գրեթե բոլոր երկրների էկոնոմիկան ուղղված էր դեպի Արևմուտք, այն դեռևս պահպանում էր իմպերիալիստական խոշոր տերությունների շահերին ենթակա լինելու դրոշմը, որոնց հետ մինչև ժողովրդական իշխանության հաղթանակը այն կապված էր շատ ուղղություններով: Այդ էտապում սոցիալիստական երկրների տնտեսական փոխհարաբերությունների զարգացումն ընթանում էր առավելապես երկկողմանի հիմքի վրա: Համաշխարհային սոցիալիստական շուկան դեռ նոր էր միայն սաղմնավորվում: Սոցիալիստական երկրների ընտանիքի համար բնորոշ համագործակցության նոր ձևերը նոր էին կազմավորվում:

Այդ ժամանակը կարելի է անվանել յուրատեսակ անցման ժամանակաշրջան, երբ արտաքին տնտեսական հարաբերությունների հին, կապիտալիզմի համար տիպական սիստեմից անցում էր կատարվում դեպի միջազգային կապերի նոր տիպի ձևավորումը: Ինչպես որ սոցիալիստական ռևոլյուցիա կատարած առանձին երկրներում հարկ է լինում անցման ժամանակաշրջանի ընթացքում կառուցել նոր հա-

սարականի-տնտեսական շենք, դրա համար օգտագործելով նաև հին նյութերը, այնպես էլ սոցիալիզմի ուղին բռնակոխած երկրների փոխհարաբերությունների նոր սիստեմ ստեղծելիս հարկ է լինում հաշվի առնել այն, ինչ ստացել ենք կապիտալիզմից, հարկ է լինում մի որոշ ժամանակ օգտագործել տնտեսական կապերի այն ձևերը, որպիսիք նա թողել է մեզ:

Տնտեսական Փոխօգնության Խորհրդի ստեղծումը 1949 թվականին սկիզբ դրեց բազմակողմանի համագործակցությանը սկզբում առևտրի բնագավառում, իսկ հետո նաև արտադրության բնագավառում: Այժմ համաշխարհային սոցիալիստական սիստեմը արդեն մեկ միասնական ամբողջություն է կազմում ո՛չ միայն քաղաքականապես, այլև տնտեսապես: Իր գոյության 12 տարվա ընթացքում Տնտեսական Փոխօգնության Խորհրդին հաջողվեց ստեղծել, գոնե այդ կազմակերպության մասնակից երկրների համար, կոլեկտիվ համագործակցության և փոխօգնության կայուն հիմք:

Կոլեկտիվ տնտեսական համագործակցություն կազմակերպելու ասպարեզում Տնտեսական Փոխօգնության Խորհրդի գործունեությունը առայժմ տարածվում է ոչ բոլոր սոցիալիստական երկրների վրա: Տարբեր ժամանակներում սոցիալիզմի ուղին բռնակոխելը նրանց հնարավորություն չտվեց միաժամանակ սկսել կոլեկտիվ տնտեսական համագործակցությունը: Սակայն Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մեջ մտնող պետությունների տնտեսական մերձեցման հաջողությունները սոցիալիզմի բոլոր երկրների համար հեշտացնում են կոլեկտիվ տնտեսական համագործակցության ուղին անցնելը: ՏՓԽ-ի անդամ պետությունների և այնտեղ չընդգրկված սոցիալիստական երկրների միջև զարգանում են տնտեսական լայն կապեր, որոնք նպաստում են նրանց է՛լ ավելի լայն տնտեսական համագործակցության համար պայմանների հասունանալուն:

Այսօր սոցիալիստական լագերը ամբողջությամբ վերցրած և նրա բաղադրիչ մասը հանդիսացող երկրների մեծամասնությունն առանձին վերցրած ունեն զարգացած արդյունաբերություն և խոշոր հանրայնացված գյուղատնտեսություն: Նախնական հաշիվներով սոցիալիստական սիստեմը, որը գրավում է երկրագնդի տերիտորիայի 26 տոկոսը, թողարկում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ 37 տոկոսը: Սոցիալիստական երկրների մեծամասնությունն ունի զարգացած արդյունաբերություն, որը տալիս է դրանց համախառն արդյունքի մոտ $^3/_4$-ը:

Կազմավորվել և ամրապնդվել է համաշխարհային սոցիալիստական շուկան, որի զարգացման գործին մասնակցում են բոլոր սոցիալիստական պետությունները՝ Սովետական Միությունը, ժողովրդական Չինաստանը, Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրները:

Այժմ սոցիալիստական երկրները թևակոխել են զարգացման մի այնպիսի ժամանակաշրջան, երբ բարենպաստ պայմաններ են հասունացել նրանց տնտեսական ու քաղաքական համագործակցությունը նոր, է՛լ ավելի բարձր աստիճանի վրա դնելու համար: Այդ աստիճանի վրա առանձնակի նշանակություն են ստանում ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, արտադրության կոոպերացումը և մասնագիտացումը, որոնք ապահովում են սոցիալիստական երկրների հաջող զարգացումն իրենց օրգանական կապի մեջ:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը մոտեցել է մի այնպիսի սահմանագծի, երբ նրա զարգացման հեռանկարներն արդեն անհնարին է ճիշտ որոշել ազ-



գային տնտեսությունների մեխանիկական պարզ գումարման հիման վրա: Մեր առջև ծառացած է խնդիր, ամեն կերպ ամրապնդելով յուրաքանչյուր երկրի ազգային էկոնոմիկան և զարգացնելով նրանց միջև եղած կապերը, աստիճանաբար նպաստել ամբողջ սիստեմի շրջանակներում այն միասնական տնտեսական օրգանիզմի ստեղծմանը, որի մասին այնպիսի հանճարեղ կանխատեսությամբ խոսում էր Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Հայտնի է, որ մեկ երկրի սահմաններից սոցիալիզմի դուրս գալուց հետո տնտեսական օրենքները շատ ավելի մեծ ասպարեզ ստացան, ընդսմին նրանց գործողությունը ավելի բարդ է դառնում:

Օրինակ, պլանաչափ և պրոպորցիոնալ զարգացման օրենքը, գործելով ամբողջ սիստեմի շրջանակներում, պահանջում է պլանաչափություն և որոշ պրոպորցիաներ պահպանել ինչպես յուրաքանչյուր սոցիալիստական երկրում, այնպես էլ ամբողջ համագործակցության մասշտաբով: Մեր ժամանակներում սոցիալիզմի տնտեսական օրենքներն իրենց ամբողջ լիակատարությամբ օգտագործելը նշանակում է սովորել բացահայտել նրանց գործողությունը, դրանք հաշվի առնել ո՛չ միայն ազգային շրջանակներում, այլև ինտերնացիոնալ մասշտաբով:

Մեր առջև ծառացած է պատմական նշանակություն ունեցող մի խնդիր՝ սովորել իսկական ձևով օգտագործել սոցիալիզմի առավելությունները, որպիսիք բխում են համաշխարհային նոր սիստեմի գոյության փաստից, այսինքն՝ հմտորեն ղեկավարել աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, գիտատեխնիկական աշխատանքների կոորդինացումը, ավելի լրիվ օգտագործել համաշխարհային սոցիալիստական շուկայի հնարավորությունները:

Դեռևս Մարքսը մատնանշել է, որ աշխատանքի նույնիսկ պարզ համակցումը մեծապես ավելացնում է դրա արտադրողականությունը: Հասարակական աշխատանքի արտադրողականությունն ավելի է աճում նույնատիպ հասարակական կառուցվածք, քաղաքական նպատակների ու շահերի ընդհանրություն ունեցող սոցիալիստական երկրների ջանքերը միավորելիս: Կոոպերացնելով սոցիալիստական երկրների էկոնոմիկայի զարգացումը, մենք կտասնապատկենք նրանցից յուրաքանչյուրի և ամբողջ սիստեմի ուժերը: Մենք մեր տնտեսական համագործակցության ձևերը համապատասխանեցնում ենք աճած արտադրողական ուժերի մակարդակին, լայն ասպարեզ ենք բացում դրանց հետագա աճման համար:

Համագործակցության և փոխօգնության սիստեմի կատարելագործումը բարենպաստ հող է ստեղծում սոցիալիստական ազգերի համակողմանի մերձեցման համար, նպաստում է տնտեսական զարգացման ընդհանուր գծի հավասարեցմանը և միևնույն ժամանակ ամրապնդում է սոցիալիստական երկրներից յուրաքանչյուրի սուվերենությունը, քանի որ ամեն մի երկիր իր զարգացման ընթացքում հնարավորություն է ստանում հենվել ո՛չ միայն սեփական ուժերի, այլև ամբողջ համագործակցության աջակցության վրա: Մեր ժամանակներում, երբ գոյություն ունի սոցիալիստական երկրների սիստեմ, աշխատանքի միջազգային բաժանման առավելությունները չօգտագործելը կնշանակեր ավելի դժվար ճանապարհով գնալ ժամանակակից արտադրողական ուժեր ստեղծելու գործում, իրեն զրկել արտադրությունը գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա զարգացնելու հնարավորությունից:

Սոցիալիզմի երկրների արտադրողական ուժերի, հետևապես նաև ամբողջ համաշխարհային սոցիալիստական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն

նախապայմանը, իհարկե, այն է, որ երկրներից յուրաքանչյուրն ավելի լրիվ օգտագործի իր ներքին ռեսուրսները, շարունակ բարելավվեն ժողովրդական տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները, հետևողականորեն կենսագործվեն սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքներն ու մեթոդները:

Դրա հետ մեկտեղ համաշխարհային սոցիալիստական սիստեմը հաջող կարող է զարգանալ միայն այն պայմանով, եթե նրա մեջ մտնող երկրները համագործակցեն բազմակողմանիորեն, փոխներգործեն սերտորեն, մեր ջանքերը կոորդինացվեն, հաշվի առնվեն յուրաքանչյուր երկրի և ամբողջ սոցիալիստական համագործակցության շահերը: Այլ ճանապարհ չկա և չի կարող լինել:

Սոցիալիզմի երկրների ավելի ակտիվ համագործակցության անհրաժեշտությունը թելադրվում է նաև այն բանով, որ առավելագույն ժամանակ շահվի կապիտալիզմի հետ տնտեսական մրցակցության մեջ հաղթանակ տանելու համար: Պետք է նկատի ունենալ, որ իմպերիալիստները լրջորեն ընդունել են էկոնոմիկայի զարգացման ասպարեզում մեր մրցահրավերը: Իմպերիալիստական պետությունները ձգտում են միավորել իրենց ուժերը սոցիալիզմի հաղթարշավը կանգնեցնելու համար: Իմպերիալիստները կցանկանային ոչնչացնել սոցիալիստական կարգը և վերականգնել կապիտալիզմի մենաշնորհ տիրապետությունն ամբողջ աշխարհում: Սակայն սոցիալիզմի երկրներն իրենց տնտեսական և գիտատեխնիկական զարգացման մեջ այնպիսի բարձր մակարդակի են հասել, որ նույնիսկ Արևմուտքի որոշակի շրջաններում այժմ հասկանում են այդ դիտավորությունները պատերազմի միջոցով իրականացնելու անհնարինությունը: Իմպերիալիստները չեն կարող չտեսնել, որ գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներին համապատասխանող ժամանակակից զենքի զարգացման գործում սոցիալիստական լագերը ո՛չ միայն չի զիջում, այլև շատ բանում գերազանցում է նրանց: Միայն բանականությունը կորցրած մարդիկ կարող են մեր ժամանակներում հույս դնել, թե պատերազմի միջոցով կարելի է լուծել սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական վեճը:

Իհարկե, Արևմուտքում կան սոցիալիզմի նաև այնպիսի մոլի թշնամիներ, որոնք ասում են, թե ավելի լավ է մեռնել կապիտալիզմի օրոք, քան ապրել կոմունիզմի օրոք: Բայց այդպես կարող են մտածել միայն խելագարները: Արևմուտքի ողջամիտ գործիչները ավելի ու ավելի են հարկադրված հանգելու այն ռեալիստական հետևության, որ ցանկությունից անկախ հարկավոր է հաշվի առնել աշխարհում երկու սիստեմների՝ կապիտալիզմի սիստեմի և սոցիալիզմի սիստեմի գոյության փաստը, այսինքն՝ հաշվի առնել խաղաղ գոյակցության քաղաքականությունը: Այդ հետևությունը, իհարկե, չի նշանակում, թե իմպերիալիստները հաշտվել են սոցիալիզմի, մեր տեսության, մեր պրակտիկայի, մեր գաղափարների հետ: Ո՛չ, դա համաշխարհային ասպարեզում ուժերի այն նոր դասավորության հարկադրյալ ընդունումն է, որ ստեղծվել է սոցիալիստական սիստեմի հզորության աճման հետևանքով: Ռեալ փաստերից խուսափել անկարելի է: Ահա թե ինչու իմպերիալիստները ստիպված են հաշվի նստել գոյություն ունեցող դրության հետ: Օբյեկտիվորեն դա նշանակում է, որ մենք կապիտալիստական երկրներն աստիճանաբար մղում ենք դեպի երկու սիստեմների խաղաղ մրցության ճանապարհը:

Իմպերիալիստներն այդ դեպքում, իհարկե, ելնում են իրենց սեփական շահերից: Նրանք չեն ցանկանում հրաժարվել սոցիալիզմի երկրներն այս կամ այն միջոցով քայքայելու հույսերից, չեն հրաժարվում սոցիալիստական լագերի դեմ պայքարելուց: Բայց այդ պայքարը ռազմական ասպարեզում նրանց փակուղի է տանում, քանի որ թե այս և թե մյուս կողմը, այսինքն՝ սոցիալիզմի երկրները և կապիտալիզմի



երկրները ունեն միջուկային հզոր պինված ուժեր: Ռիսկ չանելով ներկայումս պատերազմ սանձազերծել սոցիալիստական լագերի դեմ և չթուլացնելով սպառազինությունների մրցավազքը, իմպերիալիստները ձգտում են իրենց բոլոր հնարավորությունները մոբիլիզացնել էկոնոմիկայի, քաղաքականության և գաղափարախոսության բնագավառում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի դեմ պայքարելու համար:

Հարցն այժմ դրված է այսպես, թե ո՞ր սիստեմը կդրսևորի ամենից ավելի կենսունակություն, այսինքն՝ որ սիստեմը կարճ ժամկետներում ժողովուրդներին կտա նյութական և հոգևոր ավելի շատ բարիքներ: Ըստ երևույթին, հենց այդ ասպարեզում էլ սուր ճակատամարտեր կլինեն կապիտալիզմի և սոցիալիզմի միջև:

ՍՄԿԿ XXII համագումարից և Սովետական Միությունում կոմունիստական շինարարության Ծրագրի ընդունումից հետո իմպերիալիստներն սկսեցին ամբողջ ձայնով ճչալ ՍՍՌՄ-ի «տնտեսական մրցահրավերի» մասին և տենդագին ջանքեր են ձեռնարկում երկու սիստեմների տնտեսական մրցության մեջ դիմանալու համար: Կապիտալիզմի գաղափարախոսները և լիդերները ուղղակի հայտարարում են, որ Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների կողմից տնտեսական հարձակման հարաճուն սպառնալիքի պայմաններում կապիտալիստական երկրները պետք է միավորվեն: Պատահական չէ, որ ԱՄՆ-ի պրեզիդենտ Քենեդին վերջերս հանդես եկավ արևմտյան տերությունների այսպես կոչված փոխադարձ կապվածության վերաբերյալ մեծախոստում դեկլարացիայով, կոչ անելով միավորել Արևմտյան Եվրոպայի իմպերիալիստական պետությունների և ԱՄՆ-ի ուժերը՝ «միասնական համագործակցություն» ատլանտյան միություն ստեղծելու նպատակով: Պր-ն Քենեդիի այդ պլանները, իհարկե, նպատակ ունեն պահպանել և է՛լ ավելի ամրապնդել ԱՄՆ-ի ղեկավար դերը կապիտալիստական աշխարհում: Այս ամենը մեկ անգամ ևս վկայում է այն մասին, որ իմպերիալիստները տնտեսական մրցությունից պակաս չեն վախենում, քան մեր ռազմական հզորությունից, և ձգնում են սոցիալիստական երկրներին, համաշխարհային կոմունիստական շարժմանը, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին հակադրել ռեակցիոն ուժերի միասնական ճակատը:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո նշանակալից չափով ուժեղացավ կապիտալիստական երկրների տնտեսական և արտաքին-քաղաքական միավորման տենդենցը: Առաջացան այնպիսի միջազգային կազմակերպություններ, ինչպես «Ածխի և պողպատի եվրոպական միավորումը», «Ընդհանուր շուկան», «Տընտեսական համագործակցության և զարգացման կազմակերպությունը» և այլն: Արևմտյան աշխարհի պարագլուխներին, չնայած նրանց միջև գոյություն ունեցող բոլոր հակասություններին, մասամբ հաջողվեց կազմակերպել միջպետական միություններ, որոնց գործունեությունը որոշակի դժվարություններ է ստեղծում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ, չամրապնդված պետությունների համար:

Ինչո՞ւ, չնայած բոլոր հակասություններին, իմպերիալիստներին հաջողվում է, թեպետև ոչ լրիվ չափով, միջազգային մասշտաբով կոորդինացնել տնտեսական համագործակցությունը մի քանի կարևոր բնագավառներում:

Նախ, այստեղ, թեև հակասական հիմքի վրա, դրսևորվում է տնտեսական կյանքի է՛լ ավելի ինտերնացիոնալացման օբյեկտիվ տենդենցը, որը մեր օրերում բազմապատիկ ուժեղացել է գիտա-տեխնիկական շատ արագ առաջադիմության հետևանքով: Պետական-մոնոպոլիստական կապիտալն իր հերթին ձգտում է ուժե-

ղացնել այդ տենդենցը և միևնույն ժամանակ այն օգտագործել իր ագրեսիվ ռազ-
մա-քաղաքական նպատակներով: Ստեղծելով իրենց միջպետական տնտեսական
միավորումները, իմպերիալիստները ձգտում են թուլացնել համաշխարհային կապի-
տալիստական տնտեսության տարբերային կարգացման բացասական հետևանքները:

Երկրորդ, պլանային էկոնոմիկա ունեցող սոցիալիստական սիստեմի աճող
հզորության փաստի հանդեպ, ժողովուրդների ազատագրական շարժման արագ
վերելքի հանդեպ իմպերիալիստները հարկադրված են ուղիներ որոնել իրենց լա-
գերում եղած հակասությունները մեղմացնելու համար: Վախենալով սոցիալիստա-
կան սիստեմի երկրների հետ տնտեսական խաղաղ մրցությունից, իմպերիալիստ-
ները ձգնում են մեր դարաշրջանի գլխավոր հակասության՝ կապիտալիզմի և սո-
ցիալիզմի միջև եղած հակասության հանդեպ հետին պլանի վրա մղել իրենց ներ-
քին հակասությունները:

«Ընդհանուր շուկան» հսկայական օգուտներ է ապահովում իմպերիալիստա-
կան մոնոպոլիաների համար: Միևնույն ժամանակ այն սպառնում է բանվոր դա-
սակարգի, գյուղացիության շահերին, քաղաքային բնակչության միջին խավերին:
Փոքր երկրները գնալով ավելի մեծ կախման մեջ են ընկնում իմպերիալիստների այդ
միությունից, որն ըստ էության համաշխարհային կապիտալիստական շուկայի բա-
ժանման ու վերաբաժանման մի նոր ձև է: Ագրեսիվ ուժերը ձգտում են «Ընդհանուր
շուկան» օգտագործել ՆԱՏՕ-ն ամրապնդելու և սպառազինությունների մրցավազ-
քը արագացնելու համար:

Միջազգային իմպերիալիստական միությունների կազմավորումից հետո կա-
պիտալիստական սիստեմի փոքր երկրները փաստորեն կորցնում են իրենց նախ-
կին դերը, իրենց սուվերենությունը: Դրանք ստիպված են լիովին գտնվել ԱՄՆ-ի
և մյուս խոշոր իմպերիալիստական տերությունների ազդեցության ոլորտում: Այդ
երկրների կառավարող շրջանները համաձայն են նույնիսկ կորցնել անկախությու-
նը, քանի որ «Ընդհանուր շուկայում» և նման մյուս կազմակերպություններում
նրանք միշտ որոշ պաշտպանություն են տեսնում սոցիալիզմի հարձակումից, աշ-
խատավոր մասսաների գրոհից:

Այստեղ դրսևորվում է իմպերիալիստների ռազմա-քաղաքական միությունների
մի կողմը ևս. այդ միությունները գնալով ավելի բացահայտ կերպով են դառնում
միջազգային ժանդարմ, որը կոչված է ճնշելու ժողովուրդների ազատության և սո-
ցիալական առաջադիմության ձգտումը:

Իմպերիալիստները և նրանց պրոպագանդան ձգնում են ազատության համար
ժողովուրդների շարժումը, իրենց իրավունքների համար աշխատավորների պայքարը
պատկերացնել որպես կոմունիզմի ներթափանցում ինչ-որ մի տեղից՝ «դրսից», որ-
պես աշխարհում գոյություն ունեցող քաղաքական հավասարակշռության խախտում
որևէ մեկի կողմից: Նրանք դրանով թաքցնում են իրենց սարսափը ժողովրդական
մասսաների աճող դժգոհության հանդեպ, փորձում են խեղաթյուրել այն ակնհայտ
ճշմարտությունը, որ կոմունիստական շարժումը դրսից չի ներմուծվում, այլ կար-
գանում է կապիտալիստական երկրների ներսում դասակարգային պայքարի հողի
վրա, բանվոր դասակարգի ու կապիտալիստների միջև, աշխատավորների և շահա-
գործողների միջև խորացող հակասությունների հողի վրա:

Արևմտյան աշխարհի պարագլուխները չեն կարող չտեսնել, որ ուժերի ներկա-
յիս հարաբերակցությունը գնալով փոխվում է ոչ հօգուտ կապիտալիզմի: Շահա-
գործման, գաղութային ճնշման և աշխատավոր մասսաների իրավազրկության հին
աշխարհը ցնցվում է ժողովուրդների ազատագրական շարժման հզոր ճնշման ներքո,



այն վտանգավոր ճեղքվածքներ է ունենում, աղետ սպառնալով կառավարող դասա-
կարգերին: Ժողովուրդներին ստրկության մեջ պահելու համար իմպերիալիստները
ստեղծում են ՆԱՏՕ-ի, ՍԵԱՏՕ-ի նման ագրեսիվ ռազմական բլոկներ, որոնք, մի
կողմից, ուղղված են սոցիալիստական սիստեմի՝ ազատության և ժողովուրդների
երջանկության գլխավոր միջնաբերդի դեմ, իսկ մյուս կողմից, ժանդարմական
ֆունկցիաներ են կատարում ազգային-ազատագրական շարժման և աշխատավոր
մասսաների նկատմամբ, որոնք ձգտում են տապալել շահագործողների իշխանու-
թյունը: Իմպերիալիստների այսպես կոչված տնտեսական միությունները նույն նպա-
տակներն են հետապնդում: Արևմտյան տերությունների ղեկավարները նույնիսկ
չեն թաքցնում այն ուղղակի կապը և փոխադարձ կախվածությունը, որպիսիք գո-
յություն ունեն, օրինակ, «Ընդհանուր շուկայի» տնտեսական կազմակերպության
և ՆԱՏՕ-ի ագրեսիվ դաշինքի միջև: Նրանք սիրում են ընդգծել, թե իրենց տնտե-
սական միավորումները կոչված են կատարելու նաև այսպես կոչված «Արևմուտքի
պաշտպանության» իրականացման կարևոր ֆունկցիաներ, որի տակ նկատի է առ-
նըվում իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունը:

Իհարկե, չպետք է չափազանցնել իմպերիալիստական միջազգային միավո-
րումների հնարավորությունները: Արևմուտքում որքան էլ որ փառաբանեն եվրո-
պական ինտեգրացիայի գաղափարը և դրա հետևանքները, չի կարելի խուսափել
այն փաստից, որ իմպերիալիստների ստեղծած միությունները չեն վերացնի կապի-
տալիզմի աշխարհին հատուկ ներքին խոր հակասությունները և արատները: ԱՄՆ-ի
ղեկավարության տակ գտնվող ռազմական բլոկներն ու միությունները հաճախ ճըգ-
նաժամ են ապրում իմպերիալիստական գլխավոր տերությունների միջև գոյություն
ունեցող խոր հակասությունների հետևանքով: Իմպերիալիստական տերությունների
մի փոքրաթիվ խմբի շահերը բախվում են կապիտալիստական մնացած երկրների
շահերին, բոլոր ժողովուրդների շահերին: Այդ ամենը չի կարող չթուլացնել իմպե-
րիալիստական միավորումները և միությունները:

Բայց հակառակորդի ուժերը չչափազանցնելը չի նշանակում անտեսել դրանք:
Անզգուշություն և կարճատեսություն կլիներ հաշվի չառնել եվրոպական ինտեգրա-
ցիայի պարագլուխների դիտավորություններն ու գործողությունները: Կոմունիստ-
ները պայքարում են «Ընդհանուր շուկան» և նման մյուս միավորումները նոր պա-
տերազմ նախապատրաստելու և սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու
նպատակով, մյուս երկրների և առանձնապես երիտասարդ, կարգացող ազգային
պետությունների վրա տնտեսական ու քաղաքական ճնշում գործադրելու նպատա-
կով օգտագործելու փորձերի դեմ: Մենք մերկացրել ենք և կմերկացնենք կապիտա-
լիստական ինտեգրացիայի վտանգավոր հետևանքներն աշխատավոր մասսաների
համար:

Դրա հետ մեկտեղ մենք հաշվի ենք առնում արտադրության ինտերնացիոնա-
լացման օբյեկտիվ այն տենդենցները, որոնք գործում են կապիտալիստական աշ-
խարհում, և դրան համապատասխան կառուցում ենք մեր քաղաքականությունն ու
մեր տնտեսական միջոցառումները: Այս կապակցությամբ ծառանում է ոչ միայն
տարբեր հասարակարգ ունեցող առանձին պետությունների միջև, այլև նրանց տըն-
տեսական միավորումների միջև տնտեսական համագործակցության և տնտեսական
խաղաղ մրցության հնարավորության հարցը:

Մենք տեսնում ենք այն վտանգը, որ կա արևմտաեվրոպական ինտեգրացիայի
օգուտները ագրեսիվ բնույթ ունեցող ինքնամփոփ միջպետական տնտեսական
խմբավորումներ ստեղծելու նպատակով օգտագործելու իմպերիալիստական շրջան-

ների ձգտման մեջ: Արևմուտքի այդպիսի քաղաքականությունը պատնեշներ է ստեղծում համաշխարհային առևտրի և երկու սիստեմների տնտեսական միությունների միջև տնտեսական համագործակցության զարգացման ճանապարհին: Դրան հակառակ սոցիալիստական պետությունները նոր իրադրության պայմաններում առաջ են քաշում այնպիսի առաջարկություններ, որոնց նպատակն է՝ ընդլայնել երկու հակադիր սիստեմների երկրների միջազգային առևտրական փոխհարաբերությունները:

Խորհրդակցության մասնակիցները իրենց կոմյունիկեում արտահայտեցին կապիտալիստական երկրների հետ արտաքին առևտուրը էլ ավելի զարգացնելու ձգտում: Նրանք առաջարկություն մտցրին առևտրի պրոբլեմների շուրջը միջազգային կոնֆերանս հրավիրելու մասին, որը կքննարկեր առանց որևէ խտրականության աշխարհի բոլոր շրջաններն ու երկրներն ընդգրկող միջազգային առևտրական կազմակերպություն ստեղծելու հարցը:

Մենք կողմնակից ենք կապիտալիզմի երկրների հետ համագործակցությանը նաև արտադրության բնագավառում: Ոչ այլ ոք, քան սոցիալիստական երկրները բազմիցս առաջարկներ են մտցրել արևմտաեվրոպական պետությունների հետ համագործակցել հումքի դեֆիցիտային տեսակները մշակելու, էներգոռեսուրսները բազմապատկելու, ջրային ճանապարհները համատեղ շահագործելու և այլ բնագավառներում:

Դրա հետ մեկտեղ, այն փաստից, որ ներկա պայմաններում իմպերիալիստները առանձնապես ձգտում են միավորել իրենց ուժերը, մենք՝ կոմունիստներս, անում ենք մի այլ հետևություն ևս: Իմպերիալիզմի ուժերի միացյալ ճակատին սոցիալիստական համագործակցությունը կհակադրի իսկական հավասարության, շահերի ընդհանրության և մարդասիրական վսեմ նպատակների վրա հիմնված էլ ավելի համախմբված միասնական միություն:

Մեր արմատական շահերը՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման շահերը պահանջում են զուգակցել ջանքերը յուրաքանչյուր երկրի ազգային էկոնոմիկայի զարգացման գործում և ուժեղացնել ամբողջ սոցիալիստական համագործակցության հզորությունը, մշտապես հոգ տանել սոցիալիզմի միասնական նյութա-տեխնիկական բազան ամրապնդելու մասին: Դրանում ենք մենք տեսնում համաշխարհային սոցիալիստական տնտեսության զարգացման գլխավոր ուղին:

## 2. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ, ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿՈՈՊԵՐԱՑՈՒՄԸ ԵՎ ԿՈՈՐԴԻՆԱՑՈՒՄԸ

Աշխատանքի միջազգային բաժանումը, որն իրականացվում է արտադրության կոոպերացման և մասնագիտացման միջոցով, համաշխարհային սոցիալիստական տնտեսության հաջող զարգացման կարևորագույն պայմանն է:

Երկրների միջև աշխատանքի բաժանում գոյություն ունի վաղուց: Հենց դրա հետ է անխզելիորեն կապված մարդկության արտադրողական ուժերի առաջադիմությունը: Հայտնի է, որ կապիտալիզմը իր զարգացման սկզբից իրեն ծառայեցրեց աշխատանքի միջազգային բաժանումը, այն օգտագործելով ամենալայն մասշտաբներով: Բայց կապիտալիզմի պայմաններում տարբեր երկրների էկոնոմիկայի փոխադարձ կապը այլանդակ, միակողմանի բնույթ ընդունեց, որի հետևանքով աշխարհը իմպերիալիստական դարաշրջանում այնպես բաժանվեց, որ այնտեղ արդյունաբերական տեսակետից զարգացած շահագործող երկրների մի փոքրաթիվ խմբի հետ մեկ-



տեղ կան մեծ թիվ կազմող հետամնաց, թույլ զարգացած երկրներ, որոնք գաղութային շահագործման ու կախման օբյեկտ են:

Կապիտալիզմի օրոք աշխատանքի միջազգային բաժանումը մոնոպոլիաներն օգտագործում են որպես լենք տնտեսական զարգացման մեջ պատմականորեն ետ մնացած ժողովուրդներին կողոպտելու համար: Դա հավարավոր տնտեսական թելերով (այդ թվում ֆինանսական և այլ «օգնության» միջոցով) այդ երկրներին կապում է հզոր տերությունների հետ, ամրապնդում ու խորացնում է պետությունների միջև եղած անհավասարությունը, միլիոնավոր մարդկանց մատնելով հետամնացության և աղքատության:

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի միջազգային բաժանումն իր ամբողջ բովանդակությամբ ակնառու կերպով արտացոլում է նոր կյանք կառուցող ժողովուրդների միջև գոյություն ունեցող իսկական բարեկամության, իրավահավասարության և համագործակցության հարաբերությունները: Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի բաժանումը ծառայում է մեր առաջընթացի տեմպերի արագացմանը, տնտեսական առաջացող դժվարությունների հաջող հաղթահարմանը: Նա նպատակ ունի վերացնել արդյունաբերական և նախկինում հետամնաց երկրների միջև եղած տնտեսական վիհը, նպաստելով ագրարային երկրների ինդուստրացմանը, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի արագ վերելքին, սոցիալիստական սիստեմի բոլոր պետությունների ինքնուրույնության և անկախության ամրապնդմանը:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի շրջանակներում աշխատանքի միջազգային բաժանումը կազմակերպվում ու զարգանում է որպես պլանաչափ պրոցես՝ սոցիալիզմի տնտեսական օրենքների գիտակցական օգտագործման հիման վրա և այդ իսկ պատճառով իր մեջ անսպառ հնարավորություններ է պարունակում արտադրողական ուժերի վերելքն արագացնելու, հասարակության նյութական բարիքները բազմապատկելու համար: Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, արտադրության լայն մասնագիտացման և կոոպերացման հիման վրա սոցիալիզմի երկրների ազգային տնտեսությունները կզարգանան առավել արդյունավետ ու լայնորեն, լրացնելով մեկը մյուսին և աստիճանաբար կազմելով մի միասնական, ներդաշնակ տնտեսական կոմպլեքս, որի մեջ յուրաքանչյուրն ունի իր տեղը, իր խնդիրները և որի մեջ յուրաքանչյուր երկիր, յուրաքանչյուր ժողովուրդ է՛լ ավելի ամուր նեցուկ կգտնի սոցիալիստական շինարարության ազգային խընդիրները լուծելիս:

ՏՓԽ-ի գոյության տարիներին շատ բան է արված աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը զարգացնելու գործում: Մշակված են «Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիմնական սկզբունքները», որոնք վերջերս հրապարակվեցին: Դա կարևոր փաստաթուղթ է, որը կոչված է ղեկավար դեր խաղալու տնտեսական համագործակցության զարգացման գործում: Մշակված են արտադրության մասնագիտացման և կոոպերացման բազմաթիվ կոնկրետ հանձնարարականներ, դրանցից մի քանիսն արդեն կենսագործված են, բայց աշխատանքն այդ ուղղությամբ պետք է անհամեմատ ավելի մեծ թափ ստանա:

Խորհրդակցության մասնակիցները միահամուռ ընդունեցին, որ տնտեսական քաղաքականության կոլեկտիվ համաձայնեցումը այժմ առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման գործում, դառնում է գլխավորը մեր տնտեսական համագործակցության մեջ:

Ազգային ժողովրդա-տնտեսական պլանները համաշխարհային սոցիալիստական սիստեմի մասշտաբով համաձայնեցնելու անհրաժեշտությունը թելադրվում է

սոցիալիստական տնտեսության պլանաչափ և պրոպորցիոնալ զարգացման օբյեկտիվ տնտեսական օրենքով: Եթե մենք սովորենք այդ օրենքի գործողությունը օգտագործել սոցիալիստական ամբողջ սիստեմի շրջանակներում կամ առաջին շըրջանում ՏՓԽ-ի երկրների կազմակերպության շրջանակներում, եթե մենք ամրացնենք ո՛չ միայն ազգային տնտեսությունների, այլև մեր երկրների տնտեսական փոխհարաբերությունների ամբողջ սիստեմի պլանային սկզբունքները, մենք կկարողանանք համաշխարհային սոցիալիստական տնտեսությունը զարգացնել է՛լ ավելի արագ տեմպերով, լայն ասպարեզ կստանանք տնտեսական ռեսուրսներով մանևրելու համար, կկարողանանք արտադրությունը վարել ավելի խնայողաբար, նվազագույն ծախսումներով:

Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մեջ մտնող երկրների ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման աշխատանքը սկսվել է դեռևս 1956 թվականին: Ի վերջո հաջողվել է որոշ կարևոր պլանային ցուցանիշները համաձայնեցնել մինչև 1965 թվականը: Ներկայումս փոխադարձ կոնսուլտացիաներ են անցկացվում առաջիկա քսան տարվա պլանների վերաբերյալ: Կան վառելիքային-էներգետիկ և հումքային բազայի զարգացման, միջպետական մասնագիտացման և մեքենաշինական ու քիմիական արդյունաբերության կոոպերացման մի քանի կարևոր հարցերի համատեղ լուծման դրական արդյունքներ:

Այսպիսով, Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մասնակից երկրների ազգային ժողովրդատնտեսական պլանների համաձայնեցման գործում լավ սկիզբ է դրված: Այժմ, հենվելով ձեռք բերած արդյունքների վրա, կարելի է շատ ավելի առաջ գնալ այդ կարևոր գործում: Ներկայումս կան բոլոր հնարավորությունները այն բանի համար, որ համաձայնեցվեն արդյունաբերական արտադրանքի ծավալների արդեն ոչ առանձին ցուցանիշները, այլ գլխավոր ժողովրդատնտեսական պլանները մշակվեն փոխադարձաբար շաղկապված՝ հաշվի առնելով մեր ընդհանուր շահերը, կազմվի մի յուրատեսակ համահավաք բալանս, որը կկատարեր տընտեսական փոխօգնության Կազմակերպության բոլոր երկրների էկոնոմիկայի զարգացման կոլեկտիվ պլանի դեր: Ինչպես ճիշտ ասվեց Խորհրդակցությունում, մենք պետք է այնպես վարենք գործը, որ արտադրության հիմնական ճյուղերի համար մշակվեն միասնական պլաններ: Այդ դեպքում կնախատեսվի բավարարել ո՛չ միայն առանձին մի երկրի, այլև մեր ամբողջ կազմակերպության պահանջմունքները:

Մարքսը մատնանշում էր, որ կապիտալիզմի պայմաններում պլանային տնտեսություն հնարավոր է վարել միայն մեկ ձեռնարկության սահմաններում, որի դարբասներից դուրս սկսվում է տնտեսական օրենքների տարերային գործողությունը, արտադրության անարխիան: Մենք, կոմունիստներս, մեր երկրներում ոչնչացնելով կապիտալիստական արտադրական հարաբերությունները, վերջ տվինք արտադրության անարխիային և սանձահարեցինք ազգային մասշտաբներով շուկայական հարաբերությունների տարերքը: Այժմ մենք հենվելով պլանային ազգային էկոնոմիկայի վրա, պետք է մի նոր առաջընթաց քայլ կատարենք՝ կարգավորենք պլանային տնտեսական հարաբերությունները Տնտեսական Փոխօգնության Խորհըրդի, իսկ հետո էլ ամբողջությամբ վերցրած համաշխարհային սոցիալիստական սիստեմի մասշտաբով:

Մեր ընդհանուր նպատակն է կառուցել համաշխարհային սոցիալիստական տնտեսություն որպես մեկ միասնական կոմպլեքս: Բայց դրա համար սոցիալիզմի երկրները չունեն այլ աղբյուր, բացի այն կուտակումներից, որոնք ստեղծվում են դրանցից յուրաքանչյուրում: Հետևապես, չի կարելի չհամաձայնեցնել, թեկուզև



ընդհանուր գծերով, կուտակումների գոյացման ու օգտագործման քաղաքականությունը Տնտեսական Փոխօգնության Խորհրդի կազմակերպության շրջանակներում: Դա ենթադրում է, նախ, միջոցների առանձնացում ընդհանուր օբյեկտների կառուցման համար, ինչը որ նոր է միայն սկսել կիրառվել, և, երկրորդ, համաձայնեցնել կապիտալ ներդրումների ազգային պլանները այն հաշվով, որ դրանցում ըստ հնարավորության հաշվի առնվեն ո՛չ միայն ազգային, այլև մեր ընդհանուր շահերը:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմին հատուկ են շատ առավելություններ, որպիսիք ունի սոցիալիստական տնտեսությունը նաև ազգային շրջանակներում: Այդ առավելությունները, մասնավորապես, հնարավորություն են տալիս խուսափելու այն ավելորդ ծախսումներից, որոնք հատկանշական են կապիտալիստական և մանր ապրանքային տնտեսությանը: Այստեղ տեղին է անալոգիա անցկացնել գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվի հետ: Կոոպերատիվը բավարարվում է մեկ խոշոր ժամանակակից տնտեսական կառուցումով այնտեղ, որտեղ մենատնտես գյուղացիները հարկադրված ունենում էին 2—3 հարյուր մանր, բայց իրենց ամբողջության մեջ շատ թանկ կառույցներ: Եթե այս օրինակը տարածենք տնտեսության ամբողջ սոցիալիստական սիստեմի վրա, ապա կստացվի, որ սոցիալիզմի երկրների համար ձեռնտու է համաձայնեցված պլաններով կառուցել մեկ խոշոր ձեռնարկություն՝ մեկուսացած զարգացման պայմաններում կառուցված մի քանի մանրերի փոխարեն:

Կապիտալ շինարարության ծրագրերը կոորդինացնելիս մենք, ըստ երևույթին, պետք է ձգտենք ավելի համաչափորեն բաշխել երկրների ջանքերը կապիտալ ծախսումների բնագավառում: Ազգային եկամտի մեջ կուտակումների բաժինը որոշելը, իհարկե, յուրաքանչյուր պետության սուվերեն իրավունքն է: Յուրաքանչյուր երկրում այդ բաժինը որոշում են, ելնելով տնտեսական շինարարության կոնկրետ խընդիրներից և յուրահատուկ սպեցիֆիկ պայմաններից: Բայց իրավացի կլինի խոսել այն մասին, որ յուրաքանչյուր սոցիալիստական երկիր հարաբերականորեն, համաչափ կերպով, հաշվի առնելով տնտեսական պոտենցիալը, մասնակցի արտադրության կենսականորեն կարևոր այն ճյուղերի զարգացման գործին, որոնք կոչված են սպասարկելու մեր ընդհանուր կարիքները:

Քանի որ դրվում է կապիտալ շինարարության համար հատկացված միջոցների ամենից ավելի արդյունավետ օգտագործման խնդիրը, մենք, հավանորեն, պետք է հաշվի առնենք նաև այդ միջոցները մեկ երկրից մյուս երկիրը որոշ չափով փոխադրելու անհրաժեշտությունը, իհարկե, շահագրգռված երկրների համար փոխադարձաբար ընդունելի պայմաններով: Այդպիսի մոտեցումը կարդարացվի և շահավետ կլինի այն բոլոր երկրներին, որոնց դա վերաբերի:

Սովետական կառավարությունը, ինչպես և ՏՓԽ-ի մեջ մտնող մյուս երկըրների ղեկավարությունը, կողմնակից է միջազգային նշանակություն ունեցող արդյունաբերական, տրանսպորտային և այլ օբյեկտների կառուցումը համատեղ ֆինանսավորելու պրակտիկայի ընդլայնմանը: Համատեղ ֆինանսավորումը կարևոր է կիրառել առաջին հերթին արդյունաբերության այն հումքային ճյուղերում, որոնք աշխատում են արտահանման համար, քանի որ դրանք ամենից ավելի կապիտալատար ճյուղերն են: Մեր կարծիքով, անհրաժեշտ պայմաններ են հասունացել այն բանի համար, որ ՏՓԽ-ում համատեղ քննարկվեն կապիտալ շինարարության կարևորագույն օբյեկտները, որոնք ընդհանուր հետաքրքրություն են ներկայացնում:

Կապիտալ շինարարության կոորդինացումը ապահովում է արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխումը ամբողջ համագործակցության մասշտաբով: Եթե

հաջողվի, իսկ այդ բանում տարակույս չկա, կապիտալ շինարարության պլանները այնպես համաձայնեցնել երկրների միջև, որ արդյունաբերական նոր օբյեկտները նախատեսեն ծածկել ո՛չ միայն ազգային, այլև ընդհանուր պահանջմունքները, հաշվի առնվեն ո՛չ միայն իր երկրի, այլև մյուս երկրների արտադրական կարողությունները, ապա հնարավոր կլինի ազատել վզալի միջոցներ, դրանք հատկացնելով այլ կարիքների համար:

Պլանների կոորդինացումը ո՛չ միայն չի կաշկանդում երկրների տնտեսական նախաձեռնությունը, այլ, ընդհակառակը, նպաստում է այդ նախաձեռնության զարգացմանը: Այդ դեպքում շատ ավելի լավ ու լիակատար կերպով են օգտագործվում հնարավորությունները ինչպես յուրաքանչյուր սոցիալիստական երկրի էկոնոմիկայի վերելքի, այնպես էլ ամբողջ համաշխարհային սոցիալիստական տնտեսության զարգացման համար:

Նախկինում Տնտեսական Փոխօգնության Խորհուրդը չէր կարող ընդհանրապես պլանների և առանձնապես կապիտալ ներդրումների պլանների համաձայնեցման սիստեմը վերակառուցել նոր հիմունքներով, քանի որ, նախ, նրա նախկին ստատուտի ժամանակ այն համապատասխան լիազորություններ չուներ դրա համար, երկրորդ, վինված չէր պլանավորման անհրաժեշտ գործիքներով՝ նյութական բալաններով, համեմատելի ժողովրդատնտեսական ցուցանիշներով, ունիֆիկացված վիճակագրությամբ: Հունիսյան խորհրդակցության որոշումները հնարավորություն են ընձեռում նոր ձևով կազմակերպել ՏՓԽ-ի աշխատանքը այդ կարևոր գործում:

Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը, արտադրության կոոպերացումն ու մասնագիտացումը կնպաստեն սոցիալիստական երկրների էկոնոմիկայի հետագա մերձեցմանը, մեր ընդհանուր տնտեսական պոտենցիալի ամրապնդմանը: Անհրաժեշտ է գտնել փոխադարձաբար ձեռնտու և իրավահավասար համագործակցության այնպիսի ճկուն ձևեր, որոնք ամենից ավելի լավ կերպով հաշվի առնեն յուրաքանչյուր երկրի շահերը և նպաստեն նրանց բարգավաճմանը:

Աշխատանքի միջազգային բաժանման խորացման պրոցեսը, ինչպես կիզակետի մեջ, արտացոլում է արտաքին առևտուրը: Տնտեսական Փոխօգնության Խորհրդի անդամ երկրների արտաքին առևտրի ընդհանուր ծավալը 1961 թվականին գերազանցեց 1960 թվականի ծավալը 3,5 անգամ: Մոտավորապես նույն չափով մեծացավ ապրանքաշրջանառությունը անմիջականորեն Տնտեսական Փոխօգնության Խորհրդի անդամ երկրների միջև: Ճիշտ է, արդյունաբերական արտադրանքի ծավալը ևս այդ նույն ժամանակամիջոցում աճեց նույն համամասնությամբ: Բայց եթե նկատի ունենանք, որ գյուղատնտեսական արտադրությունը մի փոքր դանդաղ է աճել, ապա ստացվում է, որ ՏՓԽ-ի երկրների միջև ապրանքաշրջանառությունն ավելի մեծ աճ է ունեցել, քան նրանց ժողովրդատնտեսական համախառն արտադրանքի աճը: Հենց դրանում է արտահայտվել աշխատանքի բաժանման խորացումը:

Հիշատակված ցուցանիշները կարելի է լավ համարել համագործակցության անցած էտապի համար: Սակայն դրանք այլևս չեն համապատասխանում այսօրվա խնդիրներին: Այն պայմաններում, երբ լայնորեն ծավալվում է աշխատանքի բաժանումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, ՏՓԽ-ի երկրների միջև ապրանքաշրջանառության աճը անխուսափելիորեն և շատ նկատելի կերպով կգերազանցի նրանց արտադրության աճը, ինչպես նաև նրանց ամբողջ արտաքին առևտրի ծավալի ավելացումը:

Բուրժուական որոշ տնտեսագետներ սիրում են ընդգծել արևմտաեվրոպական





ինտեգրացիայի հաջողությունները, մասնավորապես աշխատանքի բաժանման բնագավառում: Նրանք, օրինակ, մատնանշում են, թե 1950-ից մինչև 1961 թվականն ընկած ժամանակաշրջանում արևմտաեվրոպական ընդհանուր շուկայի երկրների միջև ապրանքաշրջանառությունը գրեթե երկու անգամ արագ է աճել նրանց արդյունաբերական արտադրությունից և զգալիորեն գերազանցել է դրանց ամբողջ արտաքին առևտրի զարգացումը:

Համեմատելով ապրանքաշրջանառության աճը «Ընդհանուր շուկայի» և ՏՓԽ-ի երկրներում, նրանք պնդում են, թե աշխատանքի միջազգային բաժանումը Տնտեսական Փոխօգնության Խորհրդի շրջանակներում առայժմ ավելի քիչ է զարգացած, քան Եվրոպական համագործակցության մեջ: Սակայն նրանք այս դեպքում աչքաթող են անում այն փաստը, որ մենք տարբեր մակարդակներից ենք սկսել, որ կապիտալիստները այդ խնդիրը լուծել են տասնամյակների ընթացքում: «Վեցյակի» երկրները դեռևս իրենց միավորվելուց առաջ ունեին բարձր զարգացած արդյունաբերություն և արտադրության ավելի լայն մասնագիտացում ու կոոպերացում: Մենք նոր ենք կազմակերպում այդ գործը: Սկզբնական շրջանում ժողովրդա-դեմոկրատական ոչ բոլոր երկրները բավականաչափ պայմաններ ունեին աշխատանքի լայն բաժանման համար: Նրանցից մի քանիսում չկային կամ գրեթե չկային արդյունաբերություն, կուտակման սեփական աղբյուրներ, այսինքն՝ չկար այն ելակետային բազան, առանց որի աներևակայելի է աշխատանքի զարգացած միջազգային բաժանումը:

Այժմ մենք անցել ենք այդ էտապը: ՏՓԽ-ի բոլոր երկրներն ունեն իրենց ազգային արդյունաբերական բազան, որը կարող է առաջիկայում է՛լ ավելի բարձր տեմպերով զարգանալ աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիման վրա: Որքան ավելի բարձր է արտադրողական ուժերի մակարդակը, այնքան ավելի հրամայական է արտադրական կոոպերացումն ու մասնագիտացումը խորացնելու պահանջը, բայց նույնքան ավելի լավ են նաև դրանց իրականացման պայմանները:

Փաստերը ցույց են տալիս, որ սոցիալիզմի լագերում տարեցտարի աճում են գլխավորապես հումքի և նյութերի փոխադարձ մատակարարումները: Դա ունի իր դրական կողմը: Ինչ վերաբերում է մշակող արդյունաբերության արտադրանքին, և ամենից առաջ մեքենաների ու սարքավորման փոխադարձ մատակարարումներին, ապա դրանց աճը մինչև այժմ էլ ետ էր մնում այդ ճյուղերի արտադրության աճից: 1955-ից մինչև 1960 թվականն ընկած ժամանակաշրջանում Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մեջ մտնող երկրներում մեքենաների և սարքավորման արտադրությունն աճեց 95 տոկոսով: Ընդ որում ժամանակակից տեխնիկա մատակարարողներ դարձան անցյալում այնպիսի ագրարային երկրներ, ինչպես Բուլղարիան, Ռումինիան և ուրիշներ, ինչը որ վկայում է այդ երկրների ինդուստրացման հաջողությունների մասին: Այդ նույն ժամանակ ՏՓԽ-ի երկրների միջև փոխադարձ մատակարարումներն աճեցին 79 տոկոսով: ՏՓԽ-ի երկրները նախատեսել են 1965 թվականին մեքենաների և սարքավորման արտադրությունը, 1960 թվականի համեմատությամբ, ավելացնել մոտ 50 տոկոսով, իսկ կնքված առևտրական համաձայնագրերով այդ արտադրանքի փոխադարձ մատակարարումների աճը նախատեսվում է 45 տոկոսի չափով: Բայց մեր երկրների միջև աշխատանքի բաժանման ձեռք բերած մակարդակը այլևս չի համապատասխանում դրանց տնտեսական պահանջներին:

Մեքենաների և սարքավորման արտադրության աճման ընդհանուր տեմպերից

դրանց փոխադարձ մատակարարումների ետ մնալը արտացոլում է այն հանգամանքը, որ ՏՓԽ-ի կազմակերպության մեջ բավականաչափ զարգացած չեն աշխատանքի բաժանումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը: Բայց կասկած չկա, որ այդ ետ մնալը ժամանակավոր երևույթ է, որի հաղթահարմանն էլ այժմ ուղղվում են մեր ջանքերը:

Պետք է ասել, որ արդյունաբերության մշակող ճյուղերի մասնագիտացման և կոոպերացման բնագավառում ՏՓԽ-ի երկրները վատ «ժառանգություն» են ստացել կապիտալիզմից: Անցյալում, համաշխարհային կապիտալիստական տնտեսության սիստեմում եղած ժամանակ, ժողովրդական դեմոկրատիայի մի շարք երկրների զարգացման յուրահատուկ պայմանները նպաստում էին արդյունաբերության տնտեսապես չարդարացվող, փոքր-սերիական արտադրության վրա հիմնված ունիվերսալիզացիայի առաջացմանը: Հումքային և էներգետիկ կայուն բազայի բացակայությունը, իսկ որ գլխավորն է, տնտեսական կախումը խոշոր տերությունների իմպերիալիստական մոնոպոլիաներից, այդ երկրների մեծամասնությանը զրկում էին արտադրությունը խոշոր մասշտաբներով զարգացնելու հնարավորությունից: Այդ հանգամանքը, իր հերթին, նրանց հնարավորություն չէր տալիս մասնակցել աշխատանքի միջազգային բաժանմանը քիչ թե շատ ձեռնտու պայմաններով և առաջացնում էր իրենց մոտ՝ իրենց տանը արտադրության որքան կարելի է ավելի շատ տեսակներ ստեղծելու տենդենց: Նրանք վստահ չէին, թե անհրաժեշտ ամեն բան իրենք կկարողանան ստանալ իրենց արտադրանքը փոխանակելիս:

ՏՓԽ-ի մասնակից երկրների համագործակցության զարգացման ընթացքում ավելի ու ավելի ակնհայտ էր դառնում, որ տնտեսության այդպիսի «ունիվերսալիզացիան» իրեն չի արդարացնում: Դա շատ թանկ է նստում:

Երկրի ներսում որքան կարելի է ավելի բազմազան արդյունաբերական արտադրանք թողարկելու տենդենցը, ելնելով «ամեն ինչից ունենալ իր սեփականը» սկզբունքից, անտեսելով արտադրության ծախսումները, մեր ժամանակներում կարող է ընդհանրապես ծագել կամ էկոնոմիկայի ոչ բավականաչափ զարգացած լինելու հետևանքով, կամ ոչ տնտեսական բնույթի պատճառներով: Խոսքը, իհարկե, աշխարհի խոշորագույն տերությունների մասին չէ, որոնք երկրի ներսում մասնագիտացում ու կոոպերացում կազմակերպելու հնարավորության և համեմատաբար ավելի տարողունակ ներքին շուկայի շնորհիվ հնարավորություն ունեն արդյունաբերությունը զարգացնել ավելի ունիվերսալ կերպով: Բայց նույնիսկ այդ երկրների համար ձեռնտու է արտադրության միջազգային կոոպերացումը:

Սոցիալիզմի պայմաններում արժեքի օրենքի գործողությունը տարերային բնույթ չի կրում: Մեր ձեռնարկությունները անճուրդի չեն հանվում նույնիսկ այն դեպքում, երբ նրանք վնաս են բերում: Բայց, իհարկե, մենք չենք կարող հաշվի չառնել եկամտաբերության սկզբունքը, առանց որի անհնարին է սոցիալիստական տնտեսություն վարել:

Որքան բարձր է սոցիալիստական ձեռնարկությունների եկամտաբերությունը, այնքան ավելի շատ կուտակումներ է ստանում պետությունը ընդլայնված վերարտադրության համար, ժողովրդի կարիքները հոգալու համար: Իսկ մեր ժամանակներում եկամտաբեր կարող է լինել միայն խոշոր-սերիական, մասնագիտացված արտադրությունը, որը վարվում է գիտության և տեխնիկայի ամենաժամանակակից նվաճումների հիման վրա: Ահա թե ինչու ՏՓԽ-ի մասնակից երկրների առջև այժմ հարց է ծագել՝ արդյոք յուրաքանչյուր երկրում գնալ արտադրության ունիվերսալիզացիայի ուղիո՞վ, թե վճռականորեն առաջ շարժել արտադրական կոոպերացման



և միջազգային մասնագիտացման գործը: Տնտեսական Փոխօգնության Խորհրդի մասնակից երկրները ելնում են այն բանից, որ արտադրության մասնագիտացման և կոոպերացման ուղին է միայն ապահովում նրա հաջող զարգացումը:

Հայտնի է, որ կապիտալիզմի օրոք արտադրողական ուժերի զարգացումը կապված է կապիտալների հսկայական համակենտրոնացման և կենտրոնացման հետ, որը հնարավորություն է տալիս կազմակերպել արտադրանքի մասսայական թողարկում: Կապիտալիստական զարգացած երկրներում շուկայի տարերքի հետևանքով վերանում է մանր արտադրությունը: Մրցապայքարում, որպես կանոն, հաղթանակում են այն ձեռնարկությունները, որոնք կարող են արտադրանքը թողարկել խոշոր սերիաներով, ավելի ցածր ինքնարժեքով: Կապիտալիստներին դեպի աշխատանքի բաժանում և մասնագիտացում է դրդում արժեքի օրենքի անխուսափելի գործողությունը, որի համաձայն ամեն մի արտադրություն պետք է շահութաբեր լինի, այլապես նա կկործանվի: Մասսայական արտադրության մեջ է կապիտալիզմի տնտեսական հաջողությունների հիմքը: Օրինակ, ինչո՞ւ է Ֆորդին հաջողվել համաշխարհային շուկան հեղեղել իր ավտոմոբիլներով: Որովհետև նա արտադրանքը թողարկում է խոշոր սերիաներով, իսկ դա ամենաէժան արտադրանքն է:

Բայց, դրա հետ մեկտեղ, հենց դրանում է կապիտալիստական արտադրության թույլ, խոցելի կողմը: Կապիտալիզմի պայմաններում կապիտալների կենտրոնացումը և ապրանքների մասսայական արտադրությունը հիմնվում են արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա: Կապիտալիստը արտադրանքը թողարկում է ոչ թե անձնապես իր համար, այլ շուկայի համար, վաճառքի համար: Մասնավոր սեփականության և կապիտալիզմի տարերային օրենքների գործողության պայմաններում արտադրության աճը բախվում է շուկայի հարաբերական նեղությանը, և դա հնարավորություն չի տալիս կանխատեսել շուկայի պահանջները՝ տևական հեռանկարի հաշվառումով: Դա կապիտալիստների համար ամեն տեսակ անախորժությունների, այդ թվում նաև ճգնաժամերի ու կապիտալիստական արտադրության խափանումների աղբյուրներից մեկն է:

Սոցիալիզմի երկրները, վերացնելով արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, դրանով իսկ ազատվել են կապիտալիզմի ծնունդ հանդիսացող արատներից: Եթե մենք այժմ ամբողջ սոցիալիստական սիստեմի մասշտաբով, «կապիտալների սոցիալիստական կենտրոնացման» հիման վրա, մեր պլանայնությունը միացնենք մասսայական, բարձր-սերիական արտադրության կազմակերպման հետ, որի ձեռնտու լինելը ապացուցել է դեռ կապիտալիզմը, ապա այդպիսով, անտարակույս, կարագացնենք մեր հաղթանակը կապիտալիստական սիստեմի հետ տընտեսական մրցության մեջ: Իսկ դրա համար պահանջվում է լայնորեն կազմակերպել արտադրության կոոպերացումը և մասնագիտացումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շրջանակներում: Ժամանակակից զարգացած արտադրությանը, որպիսին է սոցիալիզմի երկրների արտադրությունը, խորթ է ավտարկիստական ուղղությունը: Մեր երկրների էկոնոմիկայի ազգային ինքնամփոփությունը պահպանելը կնշանակեր չօգտագործել այն հսկայական առավելությունները, որ տալիս է մեզ սոցիալիստական սիստեմը, արհեստականորեն կասեցնել մեր առաջընթացը: Դա վնասակար կլիներ մեր գործի համար:

Սոցիալիզմի երկրները կազմում են համաշխարհային սոցիալիստական սիստեմ: Դա ոչ միայն ժողովուրդների սոցիալ-քաղաքական միավորում է, այլև համաշխարհային տնտեսական սիստեմ: Ուրեմն կոոպերացումը պետք է իրականացնել

ոչ թե ինքնամփոփ կերպով յուրաքանչյուր առանձին սոցիալիստական երկրի շրջանակներում, այլ համաշխարհային սոցիալիստական տնտեսության մասշտաբով, հաղթահարելով անցյալից ժառանգություն մնացած ազգային սահմանափակվածությունը: Արտադրության պլանային բնույթը մեզ հնարավորություն է տալիս հաջողությամբ անել այդ բանը:

Մենք այժմ բարձրանում ենք ավելի բարձր մակարդակի վրա, մի այնպիսի բարձունքի վրա, որտեղից կարելի է տեսնել և ավելի ու ավելի լրիվ հաշվի առնել ամբողջ համաշխարհային սոցիալիստական տնտեսության շահերը:

Աշխատանքի միջազգային բաժանումը և արտադրության մասնագիտացումը ամենաբարենպաստ պայմաններն են ստեղծում սոցիալիստական ինդուստրացում իրականացնելու համար, հատկապես նախկինում հետամնաց երկրներում: Մենք, կոմունիստներս, լիովին հասկանում ենք յուրաքանչյուր սոցիալիստական երկրի ձգտումը՝ ունենալ զարգացած արդյունաբերություն, որովհետև առանց դրա անհնարին է բարձրացնել ազգային էկոնոմիկան ու կուլտուրան և հավասարեցնել սոցիալիստական համագործակցության տնտեսական զարգացման ընդհանուր գիծը: Մեզ համար մոտ և հասկանալի է այդ երկրների ժողովուրդների ցանկությունը՝ որքան կարելի է ավելի արագ վերջ տալ անցյալի ժառանգությանը և կանգնել առաջավոր պետությունների մակարդակին: Հենց մասնագիտացումը և արտադրական կոոպերացումն են թույլ տալիս կառուցել ավելի խոշոր և բարձր-եկամտաբեր ձեռնարկություններ, արդի տեխնիկական մակարդակով: Այդպիսի մոտեցման դեպքում արագորեն կաճեն պետության եկամուտները, ավելի հաջողությամբ կստեղծվեն կուտակումներ ընդլայնված վերարտադրության համար, ավելի բարենպաստ պայմաններ կառաջանան բարձրորակ կադրերի աճի, գիտատեխնիկական առաջադիմության համար:

Աշխատանքի սոցիալիստական բաժանման հիման վրա ստեղծված խոշոր մաս-
նագիտացված ձեռնարկությունները համաշխարհային սոցիալիստական շուկայում
ունեն արտադրանքի երաշխավորված վաճառահանում, իսկ սոցիալիստական էկո-
նոմիկայի պլանային բնույթը ապահովում է արտադրանքի կայուն պահանջարկը:
Դեռ ավելին, քանի որ նման մասնագիտացված օբյեկտների հարցում շահագրգռ-
ված են բոլոր կամ սոցիալիստական շատ երկրներ, ապա դա ենթադրում է կոլեկ-
տիվ աջակցություն և օգնություն այդ օբյեկտները կառուցելիս ու շահագործելիս:
Դրանից հետևում է, որ մասնագիտացված և կոոպերացված արդյունաբերության
ստեղծումը հավասարապես ձեռնտու է ինչպես արդեն զարգացած արդյունաբե-
րություն ունեցող երկրներին, այնպես էլ ինդուստրացման ուղիով ընթացող երկր-
ներին:

Միջազգային մասնագիտացումը ձեռնտու է ո՛չ միայն փոքր երկրներին, այլև
այնպիսի խոշոր պետություններին, ինչպիսին է Սովետական Միությունը: Իհարկե,
տարողունակ շուկա ունեցող այնպիսի մի երկիր, ինչպիսին է ՍՍՌՄ-ը, հնարավորու-
թյուն ունի կառուցել օպտիմալ չափերի խոշոր ձեռնարկություններ, որոնք նախա-
տեսված են բացառապես ներքին կարիքները բավարարելու համար: Բայց մեզ
համար ևս ձեռնտու է մասնակցել աշխատանքի միջազգային սոցիալիստական բա-
ժանմանը: Սովետական Միությունը պատրաստ է նույնիսկ դիմել մշակող արդյու-
նաբերության արտադրանքի որոշ տեսակների արտադրության կրճատմանը, եթե
պարզվի, որ ավելի նպատակահարմար է այն արտադրել Տնտեսական Փոխօգնու-
թյան Խորհրդի մյուս երկրներում:



ՏՓԽ-ի շրջանակներում համագործակցության զարգացումը այժմ մեզ համար անհրաժեշտ է դարձրել լուծել յուրաքանչյուր երկրում արտադրության մասնագիտացման ուղղությունների հարցը, այսինքն՝ լուծել, թե յուրաքանչյուր երկրում հատկապես ինչպիսի ճյուղեր, ինչպիսի կոմպլեքսով և ինչ հումքի վրա ստեղծել ու զարգացնել, որպեսզի ամենից ավելի խնայողական ճանապարհով ապահովենք մեր ընդհանուր պահանջմունքները: Արդեն ժամանակն է կազմել գոնե մինչև 1970 թվականն ընկած ժամանակաշրջանի համար մեր երկրներում արտադրանքի հիմնական տեսակների արտադրության և սպառման բալանսը և այդ բազայի վրա մշակել արտադրության միջպետական մասնագիտացման և կոոպերացման գլխավոր սխեման: Նախատեսվում է արդեն առաջիկա տարիներին նոր արտադրանքի կարևորագույն տեսակները թողարկել միջազգային մասնագիտացման և կոոպերացման հիմունքներով:

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման զարգացման ու կատարելագործման ծրագիրը պետք է ամրապնդել փոխադարձ առևտրի կազմակերպումն ու պլանավորումը բարելավելու համաձայնեցված միջոցառումներով: Մեկ երկրի շրջանակներից սոցիալիզմի դուրս գալուց հետո կազմավորվել է համաշխարհային սոցիալիստական շուկա՝ միջազգային փոխանակության մի բոլորովին նոր ոլորտ, որտեղ, ի տարբերություն համաշխարհային կապիտալիստական շուկայի, գործում են ո՛չ թե տարերային, այլ պլանային սկզբունքները: Սոցիալիստական երկրների միջև ապրանքաշրջանառությունն ապահովվում է երկարաժամկետ համաձայնագրերով պլանային արտադրության հիման վրա:

Արտաքին-առևտրական կապերի ներկայիս պրակտիկյան մեզ համոզում է այն բանում, որ մենք դեռևս չենք օգտագործում փոխադարձ առևտրի ընդլայնման բազմահարուստ հնարավորությունները: Քիչ չեն այն դեպքերը, երբ անհրաժեշտ ապրանքները ձեռք են բերվում «օտար տեղում», մինչդեռ պատշաճ կազմակերպման դեպքում դրանք կարելի է ձեռք բերել մեր համագործակցության երկրներում: Հարկ չկա ապացուցել, որ դա դժվարացնում է տնտեսական շինարարության ընթացքը:

Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը հաջող կարող է զարգանալ միայն այն դեպքում, երբ արտաքին առևտրի մեխանիզմը ևս գործի կանոնավոր ու անխափան, երբ առևտուրն ապահովի այն ամենի լիակատար ու ժամանակին իրացումը, ինչը որ ստեղծվում է աշխատանքի բաժանման հիման վրա: Ահա թե ինչու ՏՓԽ-ի մասնակից երկրները նշեցին արտաքին առևտրի սիստեմը կատարելագործելու մի շարք միջոցառումներ: Մասնավորապես, մեծ դեր կխաղա բազմակողմանի հաշվարկումներին անցնելը, ինչպես նաև առևտրական պարտավորությունների կատարման համար փոխադարձ պատասխանատվությունն ուժեղացնելու միջոցառումները:

Արտաքին առևտրի ծավալի ավելացումը կախված է թե՛ արտադրության աճման տեմպերից, թե՛ աշխատանքի միջազգային բաժանման զարգացածության աստիճանից և թե՛ արտաքին առևտրական կապերի կազմակերպումից: Մինչև այժմ ՏՓԽ-ի շրջանակներում առևտրի ընդլայնումն իրականացվում էր առավելապես արտադրության ծավալի աճման հաշվին: Այժմ պետք է որքան կարելի է ավելի լրիվ օգտագործել բոլոր երեք գործոնները:

Արտադրության միջազգային մասնագիտացման և կոոպերացման խորացումը կայուն հիմք է ստեղծում երկարաժամկետ առևտրական համաձայնագրերի համար: Տնտեսական Փոխօգնության Խորհրդի կազմակերպությունը իր առջև խնդիր է

դնում մշակել այնպիսի մի սիստեմ, որն ապահովեր անցումը սոցիալիստական երկըրների միջև առևտրի ու հաշվարկումների երկկողմանի պլանավորումից ու կարգավորումից դեպի բազմակողմանի պլանավորումն ու կարգավորումը:

Արտաքին առևտրի բնագավառում կարևոր խնդիր է սպառողական ապրանքների ասորտիմենտի ընդլայնումը և որակի բարձրացումը: Այս հարցը շատ տեսակետներից առանձնապես ակտուալ է: Սոցիալիստական երկրների արդյունաբերությունն այժմ ունի անհրաժեշտ ամեն ինչ լայն սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքներն ավելի լրիվ ու լայն բավարարելու համար: Պետք է ուղղակի ասել, որ այդ հնարավորությունները, օրինակ, մեզանում՝ Սովետական Միության մեջ, դեռևս լրիվ չեն օգտագործվում: Մենք խնդիր ենք դնում գյուղատնտեսության վերելքի և քիմիայի զարգացման հիման վրա զգալի չափով բարձրացնել լայն սպառման արտադրանքի որակը, որքան կարելի է բազմազան և մատչելի դարձնենք այդ արտադրանքը աշխատավորների համար:

Կապիտալիստական աշխարհում, ինչպես հայտնի է, արտադրանքի որակի կատարելագործման և նրա ասորտիմենտի ընդլայնման ամենաուժեղ խթանը մրցակցությունն է: Մեզանում՝ սոցիալիստական շուկայում չկա մրցապայքար: Բայց դա չի նշանակում, թե մենք պետք է հրաժարվենք արտադրանքի լավագույն որակի ու ասորտիմենտի համար այն առողջ մրցության սկզբունքից, որի ընթացքում երևան կգա արտադրողական ուժերի և արտադրական կարողությունների տնտեսական տեսակետից ամենից ավելի նպատակահարմար բաշխումը:

Ակներև է, որ ինչպես մեր երկրների ներսում, այնպես էլ համաշխարհային սոցիալիստական շուկայում իր համար ավելի ու ավելի լայն ճանապարհ կհարթի այն արտադրանքի առավելագույն պահանջարկի սկզբունքը, որն ավելի անհրաժեշտ է, էժան և ունի բարձր որակ:

Աշխատանքի միջազգային բաժանումը խորացնելու, արտադրությունը կոոպերացնելու և մասնագիտացնելու միջոցառումներն արդեն մերձակա ժամանակներում կուժեղացնեն ՏՓԽ-ի կազմակերպության երկրների, ամբողջ սոցիալիստական համագործակցության ազգային տնտեսությունների փոխադարձ կապն ու փոխադարձ կախվածությունը: Այդ պայմաններում առանձնակի նշանակություն են ձեռք բերում հաշվառումն ու վերահսկողությունը, խնայողության հաստատուն ռեժիմը ամեն ինչում, առանց որի անհնարին է սոցիալիստական տնտեսավարումը: Համաշխարհային սոցիալիստական տնտեսության նկատմամբ դա նշանակում է, նախ, յուրաքանչյուր երկրի ժողովրդական տնտեսության և նրա արտաքին տնտեսական կապերի բալանսավորված զարգացման ապահովում և, երկրորդ, տնտեսական գործունեության արդյունքների փոխանակում՝ աշխատանքի հանրորեն անհրաժեշտ ծախսումների հատուցումով:

Խոսքը, այսպիսով, վերաբերում է մեր. արտաքին-տնտեսական հարաբերությունների պրակտիկայում տնտեսական հաշվարկի լենինյան սկզբունքների հետագա զարգացմանը՝ ընդլայնված միջազգային հիմքի վրա:

Համաշխարհային սոցիալիստական տնտեսության շինարարության իրենց արդարացրած այդ մեթոդների հետագա զարգացումն ու ամրապնդումը ենթադրում է, դրա հետ մեկտեղ, եղբայրական փոխօգնություն իր բոլոր ձևերով: ՍՄԿՊ-ն իր ինտերնացիոնալ պարտքն է համարում հետագայում ևս օգնել սոցիալիզմի մյուս երկրներին իրենց էկոնոմիկան է՛լ ավելի զարգացնելու համար, ուժերը մոբիլիզացնելու գործում, անել անհրաժեշտ ամեն ինչ մեր ամբողջ համագործակցության սո-



ցիալիստական նվաճումների պաշտպանության դիրքերում կանգնած իր երկրի պաշտպանունակությունն ամրապնդելու համար, ամրապնդել սոցիալիստական ամբողջ լագերի պաշտպանունակությունը: Մենք, ՏՓԽ-ի կարևոր խնդիրներից մեկն ենք համարում սոցիալիզմի երկրների փոխօգնությունն է՛լ ավելի զարգացնելու հարցը, հատկապես այն երկրներին օգնելու հարցը, որոնք դեռևս ետ են մնում իրենց տնտեսական զարգացման մեջ: Դա, օրինակ, վերաբերում է ՏՓԽ-ի նոր ընդունված անդամին՝ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկային, որն զգում է մեր բոլոր երկրների օգնության կարիքը:

Առանձին երկրների տնտեսական շահերը ամբողջ համագործակցության շահերի հետ ճիշտ զուգորդումն ապահովելու համար մենք պետք է մտածենք նյութական ազդակների սիստեմն ավելի լավ օգտագործելու մասին: Կարծում ենք, որ Տնտեսական Փոխօգնության Խորհրդի կարևորագույն խնդիրներից մեկն այն է, որ գտնվեն այնպիսի տնտեսական լծակներ, որոնք խթանեն սոցիալիստական երկըրների շահագրգռվածությունը, կոոպերացումն ու մասնագիտացումը զարգացնելու, փոխադարձաբար ձեռնտու առևտուրը ծավալելու հարցում: Պետք է ստեղծել այնպիսի պայմաններ, երբ իրենք՝ յուրաքանչյուր սոցիալիստական երկրի տնտեսական պահանջմունքները, տնտեսական օգուտը և շահագրգռվածությունը խթան կծառայեն աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման և ազգային տնտեսությունների մերձեցման համար:

Այդ նպատակներին կարող են ծառայել, օրինակ, մասնագիտացված արտադրանքի խրախուսիչ գների քաղաքականությունը, ինչպես նաև սոցիալիստական երկըրների կողմից այն ձեռնարկությունների և օբյեկտների կոլեկտիվ վարկավորումը, որոնք կառուցվում կամ վերակառուցվում են միջազգային մասնագիտացման և կոոպերացման հիմունքներով: Մենք ընթանում ենք դեպի այն, որ, ըստ երևույթին, ապագայում նպատակահարմար կլինի այդպիսի միջոցառումների վարկավորման համար ստեղծել սոցիալիստական երկրների կոլեկտիվ բանկ:

Թե հատկապես ինչպե՞ս պետք է կառուցել մասնագիտացման և կոոպերացման խթանման և նյութական խրախուսման սիստեմը, սա մի այնպիսի հարց է, որը պահանջում է մասնագետների մանրակրկիտ ուսումնասիրություն: Մեր կարծիքով, խրախուսիչ միջոցառումները պետք է առաջին հերթին մշակել արտադրության առավել կարևոր այն ճյուղերի համար, որոնք առաջնակարգ նշանակություն ունեն համաշխարհային սոցիալիստական ամբողջ սիստեմի համար, ամենից ավելի մեծ տնտեսական արդյունք են տալիս մասնագիտացման դեպքում, ինչպես նաև արտադրության առանձնապես դեֆիցիտային ճյուղերի համար: Խրախուսանքի միջոցառումները արտադրանքի յուրաքանչյուր կոնկրետ տեսակի համար պետք է տրվեն մի որոշ ժամանակով, քանի որ հետագայում, արտադրությունը յուրացնելուց և արտադրանքի կանոնավոր մասսայական թողարկմանն անցնելուց հետո արտադրող երկիրը ավտոմատիկ կերպով ավելի մեծ տնտեսական օգուտներ կքաղի և լրացուցիչ նյութական խթանման կարիք չի զգա:

Արտադրության կոոպերացումը, երկրների տնտեսական մերձեցումը, տնտեսական զարգացման ընդհանուր գծի հավասարեցումը տանում են դեպի այն, որ հետագայում, հնարավոր է, ձեռնտու և նպատակահարմար լինի սոցիալիստական որոշ երկրների ապրանքների անմիջականորեն ուղարկելը մյուսների շուկաները: Դա կլինի սոցիալիստական երկրների տնտեսական պատնեշների աստիճանական վերացման ու հաղթահարման դրսևորումներից մեկը:

## 3. ՏՓԽ-Ի ԵՐԿՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

Սոցիալիստական երկրների նյութատեխնիկական բազայի ամրապնդումը արդեն այսօր անհրաժեշտ է դարձնում մի շարք կարևոր և անհետաձգելի պրոբլեմների լուծումը: Այժմ ՏՓԽ-ի երկրների միջև կոնսուլտացիաներ են անցկացվում առաջիկա քսանամյակում էկոնոմիկայի վարգացման գլխավոր ուղղությունների և փոխադարձ կապերի վերաբերյալ: Ինչպես այդ բխում է հեռանկարային պլանների ուրվագծումներից, որոնց շուրջը կոնսուլտացիաներ են անցկացվում, ՏՓԽ-ի արդյունաբերական արտադրությունը 1961—1980 թվականներին կավելանա ավելի քան 6 անգամ, գյուղատնտեսության արտադրանքը՝ 3 անգամ, իսկ ազգային եկամուտը՝ համարյա 5 անգամ:

Այս խնդիրները լուծելու համար առանձնապես կարևոր է ընդհանուր ջանքերով գտնել վառելիքի, հումքի և նյութերի պրոբլեմի առավել խնայողական լուծման ուղիները, քանի որ դրանց արտադրության ավելացումը կապված է հսկայական կապիտալ ներդրումների հետ:

1960 թվականին ՏՓԽ-ի երկրներում արտադրվել էր 970 մլն. տոննա վառելիք (պայմանականի վերածած), իսկ 1980 թվականին նախատեսվում է արտադրել 3400 մլն. տոննա: Այս խնդրի լուծմանը կօգնի մեր երկրների վառելիքա-էներգետիկ միասնական բալանսի մշակումը, որի մեջ վառելիքի նկատմամբ յուրաքանչյուր երկրի պահանջմունքների բավարարումը պետք է նախատեսվի նվազագույն ծախսումներով և պրոգրեսիվ նորմաներով:

Առանձնապես կարևոր է քարածխային կոքսի խնայողությունն ապահովող մեթոդների կիրառման խնդիրը: Համաշխարհային պրակտիկայում առաջին անգամ մեկանում մետալուրգիայի մեջ իրականացվում է բնական գազի արդյունաբերական լայն կիրառումը, որը հնարավորություն է տվել զգալի չափով իջեցնել թանկարժեք կոքսի ծախսումը: Եթե բնական գազի կիրառման հետ միաժամանակ թթվածին տրվի դոմնային վառարանին, ապա կոքսի խնայողությունը դոմնաներում կարելի է հասցնել 30—35 տոկոսի: Ընդսմին ավելանում է դոմնային վառարանների արտադրողականությունը:

Քսանամյա հեռանկարի նախնական ուրվագծումները նախատեսում են ՏՓԽ-ի երկրներում 1980 թվականին արտադրել 3500 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1960 թվականի 407 միլիարդի դիմաց: Լուծելով վառելիքա-էներգետիկ պրոբլեմը, մենք մեր առջև պետք է խնդիր դնենք 1970 թվականին ավարտել ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների և Սովետական Միության եվրոպական մասի միասնական էներգետիկ սիստեմի ստեղծումը: Ստեղծելով այն, մենք կստանանք էկոնոմիկայի համաձայնեցված զարգացման մի կարևոր միջոց, էներգետիկ կարողությունները կօգտագործվեն ավելի արդյունավետ ու մանրալին կերպով: Կկենսագործվի մեկ միասնական պլանով մի շարք հարևան երկրների էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարը:

Համաշխարհային սոցիալիստական տնտեսության հրատապ պրոբլեմներից մեկը սև մետաղների արտադրությունն այն ծավալով արագ ավելացնելու առավել ռացիոնալ ուղիները որոշելն է, որը հնարավորություն կտա լիովին բավարարել սոցիալիստական երկրների շարունակ աճող պահանջմունքները: Նախնական հաշվարկումները ցույց են տալիս, որ պողպատի արտադրությունը 1980 թվականին կավելանա մինչև 330 մլն. տոննա, 1960 թվականի 86 մլն. տոննայի դիմաց: Հումքի



և կոքսացող ածխի անհամաչափ դասավորության հետևանքով մեծ նշանակություն է ձեռք բերում սև մետալուրգիայի ձեռնարկությունների առավել ռացիոնալ տեղաբաշխման հարցը այն հաշվով, որ սև մետաղների արտադրությունն անհրաժեշտ չափով ավելացնենք ժամանակի, միջոցների և աշխատանքի նվազագույն ծախսումներով:

Վառելիքային և հումքային պրոբլեմի լուծումը ունի մի այլ ասպեկտ ևս: Սոցիալիստական երկրները մի շարք պատճառներով հումքի որոշ դեֆիցիտային տեսակների հարցում դեռևս կախված են ոչ սոցիալիստական շուկայից: Մեր կարծիքով, այս հարցում սկզբունքային դիրքն այն է, որ ապահովենք այնպիսի ապրանքների ստացման հուսալի իմպորտային աղբյուրներ, ինչպիսին են պղինձը, նիկելը, կաուչուկը, բամբակը: Դրա հետ մեկտեղ գիտության և տեխնիկայի նորագույն հայտնագործությունները մեզ հնարավորություն են տալիս սոցիալիստական սիստեմի երկրներում կազմակերպել հումքի որոշ տեսակների կամ դրանց փոխարինողների արտադրությունը: Այսպես, օրինակ, ՍՍՌՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների գիտնական քիմիկոսների նվաճումները մեզ հնարավորություն են տալիս արդեն առաջիկա տարիներին խնդիր դնել համատեղ արտադրելու այնպիսի սինթետիկ կաուչուկ, որն իր հատկություններով լիովին փոխարինում է բնական կաուչուկին, և այնպիսի սինթետիկ թելեր, որոնք հաջողությամբ փոխարինում են բամբակին:

ՏՓԽ-ի երկրների հեռանկարային պլաններում կենտրոնական տեղերից մեկը արդարացի կերպով հատկացվում է քիմիայի արագ զարգացմանը: Բայց առանձին վերցրած յուրաքանչյուր երկրի ջանքերով այդ ճյուղը զարգացնելը հեշտ գործ չէ: Շատ ավելի հեշտ է արդյունաբերության, գրեթե մեզ բոլորիս համար նոր, այդ ճյուղը ստեղծել կոլեկտիվ ջանքերով: Հունիսյան Խորհրդակցության որոշումներին համապատասխան պլանավորող օրգանները համատեղ կորոշեն այդ ճյուղի մասնագիտացման և կոոպերացման ուղղությունները յուրաքանչյուր երկրի համար, հոգ կտանեն անհրաժեշտ հումքով և սարքավորումով քիմիան ապահովելու մասին:

ՏՓԽ-ի շրջանակներում արտադրության զարգացման նախատեսված մասշտաբները և աշխատանքի բաժանումը առաջ են քաշում լուրջ տրանսպորտային պրոբլեմ: Նախնական հաշվարկումներով, միայն Սովետական Միությունից ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներին մատակարարվող բեռների ծավալը 1960 թվականի 50 մլն. տոննայից, 1980 թվականին կավելանա մինչև 250 մլն. տոննա: Էապես կաճեն բեռների հոսքերը նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների միջև:

Դա նշանակում է, որ կպահանջվեն երկաթուղային և ավտոմոբիլային նոր ճանապարհներ, եղած նավահանգիստների մոդեռնացում և նորերի կառուցում, ծովային և գետային նավատորմի տոննաժի ավելացում, նոր ջրային ճանապարհների և հաղորդակցության այլ միջոցների ստեղծում: Փոխադրումների ապահովման բնագավառում այդ խնդիրները մենք ամենից ավելի հեշտ կերպով կկատարենք, եթե համատեղ կերպով մշակենք միջազգային նշանակություն ունեցող տրանսպորտային մայրուղիների կառուցման ու վերակառուցման պլանները, ինչպես նաև դրանց ֆինանսավորման և կառավարման կարգը:

Մենք ապրում ենք գիտատեխնիկական այնպիսի մեծ ռևոլյուցիայի ժամանակ, երբ գիտության և տեխնիկայի մեջ կատարվում են ամենազարմանահրաշ հայտնագործությունները: Գիտատեխնիկական պրոգրեսը հսկայական հնարավորություններ է բացում ընդհանրապես արտադրողական ուժերի արագ աճման համար, և հատ-

կապես մեր սիստեմում: Կապիտալիզմի հետ ունեցած տնտեսական մրցության պայ-
մաններում գիտատեխնիկական պրոգրեսը դառնում է մեր արագացված առաջըն-
թացի վճռական միջոցներից մեկը և դրա հետ մեկտեղ լարված պայքարի մի աս-
պարեզ: Աշխատանքի արտադրողականության գծով առաջատար կապիտալիստա-
կան երկրներից առաջ անցնել այժմ կարելի է միայն գիտության և տեխնիկայի
ամենաառաջավոր նվաճումների և արտադրության կազմակերպման հիման վրա,
իսկ կոմունիզմը կհաղթանակի այն ժամանակ, երբ արտադրողական ուժերը և աշ-
խատանքի արտադրողականությունն ավելի բարձր լինեն, քան կապիտալիզմի եր-
կըրներում: Ուստի անհրաժեշտ է ամեն ինչ անել գիտությունը և տեխնիկան, մեր
սոցիալիստական պլանային տնտեսության առավելությունները այնպես օգտագոր-
ծելու համար, որ ամենակարճ ժամկետում գերազանցենք կապիտալիզմը տնտեսա-
կան ասպարեզում: Դրա համար էլ մենք ձգտում ենք գործն այնպես վարել, որ
սոցիալիստական գիտությունը, տեխնիկան և արտադրության կազմակերպումը
առջևից ընթանան:

Սոցիալիստական երկրներում կան գիտության և տեխնիկայի նորագույն նվա-
ճումներն արտադրության մեջ արմատավորելու մեծ հնարավորություններ: Չէ՛ որ
մեր երկրների միջև չկա մրցակցություն, չկան այսպես կոչված, առևտրական և
արտադրական գաղտնիքներ: Մենք լայնորեն և անշահախնդիր կերպով փոխանա-
կում ենք գիտական ու տեխնիկական ինֆորմացիան: Սակայն տեխնոլոգիայի պրոգ-
րեսիվ մեթոդների արմատավորումը մի շարք դեպքերում դեռևս դանդաղում է:
Վերցնենք, օրինակ, պողպատի անընդհատ ձուլման եղանակը, որ մշակել են սո-
վետական գիտնականները և ինժեներները: Դա հնարավորություն է տալիս պի-
տանի գլանվածքի արտադրությունը միջին հաշվով ավելացնել 8—10 տոկոսով, իսկ
առանձին տեսակներինը՝ մինչև 17 տոկոսով և աշխատանքի արտադրողականու-
թյունը բարձրացնել մոտավորապես 20 տոկոսով: Ընդ որում վերանում է հզոր
բլումինգներ և սլյաբինգներ կիրառելու անհրաժեշտությունը: Այս մեթոդի խնա-
յողական լինելը անտարակուսելի է: Մինչդեռ դա մեկանում, Սովետական Միու-
թյան մեջ, դեռևս դանդաղ է արմատավորվում, իսկ սոցիալիստական մյուս երկըր-
ներում, որքան հայտնի է, առայժմ ընդհանրապես չի կիրառվում:

Ասում են, թե անընդհատ ձուլման եղանակը սահմանափակում է կանկան
ասորտիմենտների պողպատ արտադրելու հնարավորությունները: Դա ճշմարիտ է:
Բայց այստեղ մեկ կրկին օգնության է գալիս աշխատանքի միջազգային բաժա-
նումը: Եթե որոշ տեսակների պողպատի արտադրությունը բաշխենք երկրների միջև
և հետո փոխանակություն կազմակերպենք, կարելի է տնտեսական մեծ օգուտ
ստանալ արտադրության ավելի պրոգրեսիվ եղանակի հաշվին և անհրաժեշտ ասոր-
տիմենտ ունենալ:

Մենք մեծ օգուտներ կարող ենք ստանալ, եթե տեխնիկական հետազոտու-
թյունների և կոնստրուկտորական աշխատանքների բնագավառում վերացնենք չար-
դարացված կուգահեռականությունը, որը տանում է դեպի ուժերի և միջոցների
փոշիացում: Օրինակ, ՏՓԽ-ի երկրներում միայն նույնատիպ մետաղահատ հաս-
տոցների կուգահեռ նախագծման վերացումից ստացած խնայողությունը կկազմի
գրեթե 4,5 հազ. մարդ-ամիս, որը հավասար է հազար կոնստրուկտորների աշխա-
տանքին մեկ տարվա ընթացքում:

Ըստ երևույթին, հասել է այն ժամանակը, երբ պետք է անցնել գիտության
և տեխնիկայի կարգացման պլանավորմանը միջազգային հիմքի վրա, համատեղ
հետաքրքրություն ներկայացնող գիտական և տեխնիկական կարևորագույն հե-



տազոտությունները կատարել միասնական հեռանկարային պլանով: Դա հնարա-
վորություն կտա հետազոտությունների թեմատիկան բաշխել երկրների միջև և նշել
այն պրոբլեմները, որպիսիք նպատակահարմար է լուծել մի քանի երկրների գիտ-
նականների և ինժեներների ջանքերով:

Մեր երկրների նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում կարևոր տեղ
է պատկանում գյուղատնտեսությանը: Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեր
պլանները ոչ մի նշանակություն չէին ունենա, եթե նրանք վերջին հաշվով չապա-
հովեին ժողովրդի համար նյութական և հոգևոր բարիքների առատության ստեղ-
ծումը: Իսկ այդպիսի առատության կարելի է հասնել միայն բարձր զարգացած և
արդյունավետ գյուղատնտեսության հիման վրա:

Յուրաքանչյուր սոցիալիստական երկիր այդ խնդիրը լուծում է, հենվելով ամե-
նից առաջ սեփական ուժերի և միջոցների վրա, որը միանգամայն ճիշտ է: Դրա
հետ մեկտեղ այդ բնագավառում ևս մեծ հնարավորություններ կան միջազգային
համագործակցության համար: Մենք կարող ենք միավորել մեր ջանքերը գյուղա-
տնտեսության մեքենայացման և քիմիացման պրոբլեմը լուծելու, գյուղատնտեսա-
կան տեխնիկա ստեղծելու և արտադրելու, արտադրական պրոցեսների էլեկտրիֆի-
կացումն իրականացնելու և այլ բնագավառներում:

Կարևոր է փոխադարձաբար ուսումնասիրել սոցիալիստական գյուղատնտեսու-
թյան ղեկավարման փորձը, օգտագործելով լավագույն այն ամենը, ինչ կուտակ-
վել է տարբեր երկրներում: ՍՄԿԿ-ն մեծ նշանակություն է տալիս գյուղատնտեսա-
կան արտադրության կառավարումը կազմակերպելուն: Մեր պարտիայի Կենտրո-
նական Կոմիտեի Մարտյան պլենումը միջոցառումներ է մշակել հողային օրգան-
ները վերակառուցելու և գյուղատնտեսական արտադրության ղեկավարումն ար-
մատապես բարելավելու ուղղությամբ: Պարտիական և սովետական օրգանները ար-
դեն որոշ փորձ են ձեռք բերել այդ գործում: Դրա հետ մեկտեղ մենք պատրաստ
ենք ուսումնասիրել և օգտագործել առաջադիմական այն բոլոր միջոցառումները,
որ իրականացրել են մյուս եղբայրական պարտիաները գյուղատնտեսության ղե-
կավարման մեթոդները կատարելագործելու ուղղությամբ:

Հունիսյան Խորհրդակցությունում հավանության արժանացան Լեհաստանի
Միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի և Լեհական Ժողովրդական Ռես-
պուբլիկայի կառավարության կարևոր առաջարկությունները Տնտեսական Փոխօգ-
նության Խորհրդի դերը բարձրացնելու և գործունեությունը բարելավելու մասին:
Խորհրդակցության բոլոր մասնակիցները հանգեցին այն հետևության, որ Տնտե-
սական Փոխօգնության Խորհրդի մինչև այժմ գոյություն ունեցած կազմակերպա-
կան կառուցվածքը, նրա աշխատանքի ձևերն ու մեթոդները արդեն դադարել են
նրա առջև ծառացած խնդիրներին համապատասխանելուց:

Խորհրդակցության ընդունած այն որոշումը, որ Խորհրդի մասնակից երկըր-
ների եղբայրական պարտիաների առաջին քարտուղարները և կառավարություն-
ների ղեկավարները պարբերաբար հավաքվեն տնտեսական համագործակցության
հրատապ պրոբլեմները քննարկելու համար, ՏՓԽ-ի լայն լիազորություններով օժտ-
ված Գործադիր կոմիտեի ստեղծումը և Խորհրդակցության Կոմյունիկեում ու որո-
շումներում շարադրված մյուս միջոցառումները անշուշտ կօգնեն մեր երկրների
տնտեսական համագործակցության կազմակերպումը դնել զարգացման նոր էտապի
պահանջներին համապատասխան պատշաճ մակարդակի վրա:

## 4. ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ

Մենք ապրում ենք այնպիսի դարաշրջանում, երբ մարդկության սոցիալական
կարգացումը օրակարգում դրել է կապիտալիստական կարգը համաշխարհային
մասշտաբով սոցիալիստական կարգով փոխելու հարցը: Դա սուր պայքարի դարա-
շրջան է, որի ընթացքում կապիտալիզմն ամեն ինչ անում է իր կործանման ան-
խուսափելի ժամը հետաձգելու համար, իսկ սոցիալիզմը ո՛չ միայն ամրապնդում ու
կարգացնում է իր նվաճումները, այլև բոլոր ժողովուրդներին օգնում է իրականաց-
նելու ազգային ու սոցիալական ազատագրության, խաղաղության և առաջադիմու-
թյան իրենց օրինական ձգտումները:

Մեզ՝ կոմունիստներիս համար երկու սիստեմների պայքարում գլխավոր հարցն
այն է, թե ինչ ուղիներով և միջոցներով ապահովենք սոցիալիզմի ազդեցության
հետագա անշեղ աճը ամբողջ աշխարհում: Ինչպես հայտնի է, այդ հարցի սկըզ-
բունքային լուծումը տվել է դեռևս Վ. Ի. Լենինը, որը մատնանշում էր, որ հաղթա-
նակած սոցիալիզմը աշխարհի իրադարձությունների ընթացքի վրա իր գլխավոր
ներգործությունը թողնում է սոցիալիստական հասարակարգի և ամենից առաջ նրա
ամբողջ տնտեսության հաջող կարգացման միջոցով (Երկեր, հ. 32, էջ 562): Այս
ցուցումները արվել են այն ժամանակ, երբ սոցիալիզմը հաղթանակել էր ընդամենը
միայն մեկ երկրում՝ Ռուսաստանում: Դժվար չէ հասկանալ, թե դրանք ինչպիսի
հսկայական նշանակություն են ձեռք բերել մեր օրերում, երբ սոցիալիզմի գաղա-
փարները կենսագործվում են ամբողջ սիստեմի մասշտաբներով:

Կյանքը մեր առջև խնդիր է դրել պատմական կարճ ժամկետում ժողովուրդնե-
րին ապացուցել սոցիալիստական արտադրաեղանակի առավելությունները և նրա
վիթխարի հնարավորությունները: Այդ խնդիրը լուծելու համար մենք պետք է միա-
վորենք ո՛չ միայն մեր քաղաքական, այլև մեր տնտեսական ուժերը: Կոոպերացման
կարգացման, աշխատանքի բաժանման, արդի գիտության և տեխնիկայի նվաճում-
ների ավելի լավ ու արդյունավետ օգտագործման միջոցով անհրաժեշտ է է՛լ ավելի
արագ կարգացնել սոցիալիստական երկրները: Այդ ուղին ընդունված է բոլոր
մարքս-լենինյան պարտիաների կողմից և հիմնավորված է 1957 և 1960 թվական-
ների Մոսկվայի Խորհրդակցություններում ընդունված ծրագրային փաստաթղ-
թերում:

Սակայն դեռևս կան իրենց մարքսիստներ անվանող մարդիկ, որոնք ճգնում
են սխոլաստիկ դատողությունների օգնությամբ վարկաբեկել երկու սիստեմների՝
սոցիալիզմի սիստեմի և կապիտալիզմի սիստեմի տնտեսական խաղաղ մրցության
անհրաժեշտության վերաբերյալ, մեր տնտեսական հաջողությունների վճռական
նշանակության վերաբերյալ Վ. Ի. Լենինի կարևորագույն հետևությունը: Հանդես
գալով խաղաղ գոյակցության, տնտեսական խաղաղ մրցության քաղաքականու-
թյան դեմ, նրանք պնդում են, թե դա ոչ այլ ինչ է, քան եթե էկոնոմիստների տեսու-
թյունների կրկնություն, որոնք, ինչպես հայտնի է, կապիտալիզմի դեմ մղվող քա-
ղաքական պայքարին երկրորդական նշանակություն էին տալիս, իսկ տնտեսական
պայքարը համարում էին բանվոր դասակարգի գլխավոր գործը:

Բայց այդպիսի դատողություններ կարող են անել միայն այն մարդիկ, որոնք
չեն ըմբռնում լենինիզմի էությունը:

Երկու սիստեմների տնտեսական խաղաղ մրցության թեզիսը ոչ մի ընդհանուր
բան չունի էկոնոմիստների տեսությունների հետ: Վ. Ի. Լենինը, քննադատելով էկո-



նոմիստներին, ընդգծում էր, որ բանվոր դասակարգը պետք է պայքարի ո՛չ միայն
տնտեսական դրությունը բարելավելու համար, այլև, որպես առավել ռևոլյուցիոն
դասակարգ, պետք է աչքաթող չանի գլխավոր նպատակը, իշխանությունը և
կապիտալիզմը տապալելու համար մղվող պայքարը, որովհետև աշխատավորների
տնտեսական դրության արմատական բարելավումն անհնարին է առանց ցարիզմի
և կապիտալիզմի վերացման, իսկ կապիտալիստական կարգը չի կարելի ոչնչացնել,
չտապալելով կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը:

Երկու սիստեմների տնտեսական խաղաղ մրցությունը, որի մասին խոսվում է
կոմունիստական և բանվորական պարտիաների ծրագրային փաստաթղթերում,
ամենևին չի ժխտում, այլ, ընդհակառակը, ենթադրում է սոցիալիզմի համար բան-
վոր դասակարգի դասակարգային քաղաքական պայքար կապիտալիստական եր-
կըրներում: Բայց հենց տնտեսական ճակատում սոցիալիստական ժողովուրդների
հաջողություններն են, որ ամենանպաստավոր հնարավորություններն են ստեղծում
պրոլետարիատի պայքարի ծավալման համար կապիտալիստական երկրներում հա-
նուն իր սոցիալական ազատագրության և ժողովուրդների ազգային-ազատագրա-
կան պայքարի ուժեղացման: Դա մարքսիստների շրջանում ակնհայտ ու հանրա-
հայտ ճշմարտություն է:

Համաշխարհային կոմունիստական շարժումը արդի իրականության խոր վեր-
լուծության հիման վրա նոր պայմաններում ավելի է կարգացրել լենինյան այդ
գաղափարները 1960 թվականին Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական և
բանվորական պարտիաների ներկայացուցիչների Խորհրդակցությունում: Խորհըր-
դակցության որոշումների և այնտեղ եղած կարծիքների փոխանակության իսկա-
կան իմաստն այն է, որ կոմունիստական շարժումը որոնում և գտնում է համաշխար-
հային կարգացման վրա ազդեցությունն ուժեղացնելու առավել ճիշտ ուղիներ:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պահից մինչև այսօր մեր
պայքարի ամբողջ փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ դեպի վսեմ նպա-
տակը մեր առաջընթացին զուգընթաց աճում է սոցիալիզմի և նրա գաղափարների
ձգողական ուժը: Կոմունիստական և սոցիալիստական շինարարության հաջողու-
թյունները ամենահամոզիչ նյութով—կենդանի կյանքի փաստերով—ապացուցելով
սոցիալիզմի, որպես սիստեմի, մեծ հնարավորություններն ու առավելությունները,
նպաստում են աշխատավոր մասսաների գիտակցության պարզանալուն, ուժեղաց-
նում են դասակարգային պայքարի աճման նախադրյալները կապիտալի երկըր-
ներում:

«...Մենք ասել ենք և ասում ենք,— մատնանշում էր Լենինը,— «Սոցիալիզմն
ունի օրինակի ուժ»... Պետք է գործնականորեն, օրինակով ցույց տալ կոմունիզմի
նշանակությունը» (Երկեր, հ. 31, էջ 574):

Անցած տարիների ընթացքում անհամեմատ աճեց սոցիալիզմի օրինակի դերը
հասարակական կարգացման մեջ, նրա համոզող ուժը: Իրադարձությունների ըն-
թացքի վրա սոցիալիստական երկրների տնտեսական հաջողություններով ազդելու
ինչպիսի՜ հնարավորություններ կային Լենինի ժամանակ, երբ սոցիալիզմի ռել-
սերով ընթանում էր միայն Ռուսաստանը, որը բացի այդ էլ քայքայված էր պատե-
րազմից ու ինտերվենցիայից: Իմպերիալիստական տերությունները, գրում էր Իլյիչը
այդ տարիներին, ռևոլյուցիայի ստեղծած նոր կարգերին «հնարավորություն չտվին
իսկույն ևեթ անելու այնպիսի առաջընթաց քայլ, որն արդարացներ սոցիալիստների
գուշակությունները, որը հնարավորություն տար նրանց հսկայական արագությամբ
կարգացնելու արտադրողական ուժերը, կարգացնելու այն բոլոր հնարավորություն-

ները, որոնք կգոյացնեին սոցիալիզմ: Ակնառու կերպով ակներևորեն ապացուցելու յուրաքանչյուրին ու ամենքին, որ սոցիալիզմի մեջ թաքնված են հսկայական ուժեր, և որ մարդկությունն այժմ անցել է զարգացման նոր, արտասովոր փայլուն հնարավորություններ բերող ստադիայի» (Երկեր, հ. 33, էջ 594):

Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները հիմնականում արդեն հաղթահարել են այն անբարենպաստ գործոնների գործողությունը, որոնք սոցիալիզմին խանգարում էին բոլոր կարևոր ցուցանիշների գծով առաջին իսկ քայլերից գերազանցել կապիտալիզմը: Խոսքն ամենից առաջ այն մասին է, որ այդ երկրներից շատերը առավել զարգացած կապիտալիստական պետությունների համեմատությամբ կապիտալիզմից ժառանգել էին տնտեսական և կուլտուրական հետամնացություն, որ վերջին պատերազմը նրանց պատճառել էր ավերումներ ու կռիվներ: Կարևոր է նաև այն, որ սոցիալիզմը կուտակել է մի փորձ, որն օգնում է խուսափելու շատ սխալներից: Մեծ նշանակություն ունեցավ նաև ՍՄԿՊ-ի վճռական պայքարը անհատի պաշտամունքի և նրա հետևանքների դեմ, պայքար, որը ճիշտ հասկացվեց և աջակցություն գտավ միջազգային կոմունիստական շարժման կողմից:

Անբարենպաստ գործոնների հաջող հաղթահարումը, մեր երկրում սոցիալիզմի կառուցման գործում ձեռք բերած հաջողությունները մեզ հասցրին կապիտալիզմի հետ մրցության մի նոր սահմանագիծ: Այդ սահմանագծից առաջ անցնելով, մենք հնարավորություն ունենք մոտ ապագայում գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրները նաև այնպիսի բնագավառներում, որոնցում մենք դեռ ետ ենք մնում, այդ թվում նաև նյութական բարեկեցության և ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բնագավառում:

Հաջողությամբ կառուցելով սոցիալիզմ, և ապա կոմունիզմ. ամրապնդելով և զարգացնելով մեր էկոնոմիկան, մենք ստեղծում ենք սոցիալիստական երկրների ժողովուրդների նվաճումները իմպերիալիստների ոտնձգություններից պաշտպանելու կայուն երաշխիքներ: Սոցիալիզմի ռազմական հզորությունը մի վահան է, որը հուսալի կերպով պաշտպանում է համաշխարհային առաջադիմության գործը: Արդեն բազմիցս սոցիալիստական երկրների հզորությունը կանգնեցրել է իմպերիալիստներին՝ սոցիալիստական և ազգային-ազատագրական ռևոլյուցիան ռազմական ուժով վերջ տալու նրանց փորձերում: Քանի դեռ իմպերիալիստական պետությունները չեն համաձայնի ընդհանուր և լրիվ զինաթափմանը միջազգային խիստ վերահսկողությամբ, սոցիալիզմի երկրները ամեն ինչ կանեն իրենց զինված ուժերը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության այդ պատվարը, ամրացնելու համար:

Սոցիալիզմի տնտեսական հաջողությունները հնարավորություններ են ստեղծում ավելի ու ավելի լայն ու բազմակողմանի օգնություն ցույց տալու մյուս երկրներին՝ նրանց էկոնոմիկայի զարգացման գործում: Դա առանձնապես կարևոր է երիտասարդ, զարգացող ազգային պետությունների համար: Սոցիալիստական լագերի օգնությունը նրանց հնարավորություն է տալիս հաղթահարել իմպերիալիստական պետություններից ունեցած կախումը, խուսափել նոր ստրկացումից, խթանում է նրանց առաջադիմությունը, նպաստում է այն ներքին պրոցեսների նորմալ ընթացքին և անգամ արագացմանը, որոնք կարող են այդ երկրները դուրս բերել դեպի սոցիալիզմ տանող հասարակական զարգացման գլխավոր ուղին: Իսկ այդ ուղին արդեն ոտք դրած տնտեսապես թույլ զարգացած երկրներին սոցիալիստական երկրների ցույց տված տնտեսական օգնությունը կնպաստի ընթանալ դեպի սոցիա-



լիզմ, դրանց ժողովուրդներին ազատելով զարգացման կապիտալիստական ստադիայի հետ կապված տանջանքներից ու ծանրություններից: Դա նշանակում է, որ սոցիալիզմի կառուցման ռեալ հնարավորություն է ստեղծվում բոլոր երկրներում, անկախ այն բանից, թե դրանք ռևոլյուցիայի պահին տնտեսական և սոցիալական զարգացման ինչպիսի մակարդակի են հասել:

Սոցիալիստական համագործակցությունն այժմ ունի համաշխարհային զարգացման վրա ներգործելու հսկայական նոր հնարավորություններ: Մեզ, կոմունիստներիս, դա չի կարող չուրախացնել: Բայց դա նաև շատ բանի է պարտավորեցնում մեզ, որպես ինտերնացիոնալիստների: Սոցիալիստական երկրների, նրանց մարքսլենինյան պարտիաների վրա հիրավի պատմական պատասխանատվություն է դրված այն բանի համար, որ այդ հնարավորություններն առավելագույն չափով օգտագործվեն ինչպես յուրաքանչյուր երկրի շրջանակներում, այնպես էլ մեր ամբողջ սիստեմի մասշտաբով:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդումը, սոցիալիզմի երկրների քաղաքական և տնտեսական փոխհարաբերությունների կատարելագործումը, լինելով սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման հզոր արագացուցիչ, է՛լ ավելի կբազմապատկի ամբողջ աշխարհում իրադարձությունների ընթացքի վրա սոցիալիզմի ներգործության ուժը և դրանով իսկ հսկայական ավանդ կմուծի ամբողջ մարդկության սոցիալական առաջադիմության գործում:

«Проблемы мира и социализма», № 9, 1962 г.

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի որոշմամբ հոկտեմբերի 15-ից սկսվում են սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները: Դա կարևոր իրադարձություն է պարտիական կազմակերպությունների կյանքում, որը մի նոր խթան կհանդիսանա գաղափարական և կազմակերպչական աշխատանքն ուժեղացնելու, ժողովրդական տնտեսության ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում աննախընթաց բեկում ստեղծելու գործում:

Պարտիական կազմակերպությունների առաջիկա օրերում սկսվող հաշվետու-ընտրական ժողովների առանձնահատուկ նշանակությունը կայանում է նրանում, որ դրանք, առաջին անգամ, անցկացվում են պարտիայի XXII համագումարի կողմից ընդունված ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության համաձայն: Այդ պատմական փաստաթղթերի լույսի տակ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների հազարավոր անդամներ բազմակողմանիորեն և ամենայն պահանջկոտությամբ կքննարկեն իրենց կազմակերպությունների և ընտրովի օրգանների անցած տարվա գործունեությունը, կբացահայտեն թերությունները, կնշեն կոնկրետ միջոցառումներ կոմունիստական շինարարության խնդիրների արագ և հաջող լուծման համար:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտիայի հիմքն են, հիմնական օղակը: Նրանց քաղաքական-կազմակերպական գործունեությանը պարտիան հատուկ կարևորություն է տալիս, որովհետև հենց այստեղ՝ սկզբնական կազմակերպություններում են լուծվում տնտեսական ու կուլտուրական շինարարության ամենաբազմազան, հրատապ հարցերը, այստեղ է, որ կոմունիստները ձևավորվում են որպես գաղափարական բարձր գիտակցությամբ ակտիվ մարտիկներ: Այս առումով էլ յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքը մեր պարտիայի մեծ գործի բաղկացուցիչ մասն է:

Սկզբնական պարտիական կազմակերպությունները գործում են մասսաների հետ սերտ համագործակցված, նրանց միջոցով հետևողականորեն իրագործում են պարտիայի քաղաքականությունը:

Հաշվետու-ընտրական ժողովները պետք է անցնեն այն նշանաբանով, թե մեր պարտիական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում ինչպես են կենսագործել ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, իրենց առջև ծառացած կոնկրետ խնդիրները և, հատկապես, յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները: Հենց այդ առաջադրանքների, տնտեսա-



կան ու կուլտուրական շինարարության խնդիրների կատարման կոնկրետ արդյունքներով էլ կգնահատվի նրանց աշխատանքը:

Մեր ռեսպուբլիկայում կան ավելի քան 3600 սկզբնական պարտիական կազմակերպություններ, որտեղ ընդգրկված են 91 հազար 573 պարտիայի անդամներ և անդամության թեկնածուներ: Պարտիական կազմակերպությունները ստեղծված են և գործում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում՝ արդյունաբերական ձեռնարկություններում, նորակառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, ուսումնական հաստատություններում, գիտա-հետազոտական հիմնարկներում և այլուր:

Ինչպես հայտնի է, սկզբնական պարտիական կազմակերպություններն իրենց ամբողջ գործունեության ընթացքում ղեկավարվում են ՍՄԿՊ Ծրագրով և Կանոնադրությամբ: Նրանցից յուրաքանչյուրը այս կարևոր փաստաթղթերում կարող է գտնել այն հարցի պարզ ու հստակ պատասխանը, թե որո՞նք են իր գլխավոր և առաջնահերթ խնդիրները, ինչո՞վ և ինչպե՞ս պետք է զբաղվել, որպեսզի արժանի ներդրում կատարել կոմունիստական հասարակարգի կառուցման գործում:

Բայց ինչքան էլ սկզբնական պարտիական կազմակերպությունները աշխատանքի բնույթով իրարից տարբերվեն, ինչպիսի յուրահատկություններ էլ ունենան, նրանց համար հիմնականը, ինչպես ասում են հարցերի հարցը՝ արտադրական պլանների կատարման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար պայքարն է:

Մեր ռեսպուբլիկայում, ընդհանուր առմամբ, գործերը վատ չեն գնում: Ռեսպուբլիկայի աշխատավորներն իրենց անդուլ աշխատանքի շնորհիվ 1962 թվականի անցած ութ ամիսների ընթացքում զգալի հաջողությունների են հասել արդյունաբերական արտադրանքի պլանների կատարման, ապրանքների որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման, բերքատվության բարձրացման, անասնապահական մթերքների ավելացման գործում: Մեծ են հաջողությունները նաև գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում: Ուրախալի է նշել, որ ժողտնտխորհրդի արդյունաբերական ձեռնարկությունները համախառն արտադրանքի թողարկման ութ ամսվա պլանները կատարել են 103 տոկոսով, շինարարները այս տարվա կապիտալ ներդրումների պլանը նույն ժամանակամիջոցում կատարել են ավելի քան 88 տոկոսով: Հրազդանի, Ախուրյանի, Վեդու, Շամշադինի շրջանների կոլտնտեսային աշխատավորները և սովխոզների բանվորները հավաքում և ամբարում են առատ բերք, հաջողությամբ են կատարում պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու իրենց պարտավորությունները:

Սակայն լավ աշխատանքի կողքին չի կարելի աչք փակել թերությունների նկատմամբ, որոնք, ցավոք սրտի, քիչ չեն: Բավական է նշել, որ անցած ութ ամսում ռեսպուբլիկայի ժողտնտխորհրդի արդյունաբերական 34 ձեռնարկությունները թերակատարեցին իրենց արտադրական պլանները: Այդ ձեռնարկությունների թվին են պատկանում Կիրովականի քիմիական, Լենինականի տեքստիլ կոմբինատները, Երևանի ավտոպահեստային մասերի, Լենինականի ապակու գործարանները և այլն: Լուրջ թերություններ կան ռեսպուբլիկայի էկոնոմիկայի առանձին ճյուղերում և, մասնավորապես, շինարարության ասպարեզում: Շինարարական շատ կազմակերպություններ և տրեստներ, ինչպես, օրինակ, Լուսավանի, Շրջանային արդյունաբերական կառույցների, Կիրովա-

կանի արդյունաբերական շինարարության, Հայքիմարդյունաբերության տրեստները սիստեմատիկաբար թերակատարում են իրենց ամսեկան առաջադրանքները, անորակ են կատարում շինարարական աշխատանքները։ Անիի, Մեղրու, Կամոյի և ուրիշ շրջանների շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ նվազեցրել են մսի, ձվի, բրդի արտադրությունը, վատ են օգտագործում անասնապահության վերելքի ռեզերվները։

Այս թերությունները վկայում են այն մասին, որ մեր որոշ պարտիական կազմակերպություններ շարունակում են աշխատել հին մեթոդներով, որ նրանք իրենց գործունեությունը դեռևս չեն վերակառուցել պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների ոգով։

Կարելի՞ է արդյոք այս թերությունների կողքով անցնել։ Իհարկե, ո՛չ։

Հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման և անցկացման ընթացքում անհրաժեշտ է խոր կերպով բացահայտել այդ թերությունների պատճառները և մշակել պրակտիկ միջոցառումներ՝ գործերի վիճակը արագ և վճռականապես բարելավելու համար։ Դրա համար անհրաժեշտ է, որ կոմունիստները պարտիայի և երկրի հանդեպ իսկական պատասխանատվություն տածեն, իրենց աշխատած տեղամասում անեն ամեն ինչ՝ աշխատանքի մակարդակը այժմյան պահանջներին համապատասխան դարձնելու համար։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի արդյունաբերական ձեռնարկությունները նվազեն հիմնական բնագիծը — յոթնամյակի չորրորդ տարվա արտադրական պլանը կատարեն 103 տոկոսով։ Պլանների կատարման ուղղությամբ լուրջ միջոցառումների պետք է դիմեն նաև շինարարական կազմակերպությունները, որպեսզի սահմանված ժամկետներին շահագործման հանձնվեն կառուցվող արդյունաբերական նոր օբյեկտները, կուլտուր-կենցաղային և բնակելի շենքերը։

Մեծ են գյուղական պարտիական կազմակերպությունների անելիքները։ Նրանց հաշվետու-ընտրական ժողովները պետք է գործնական միջոցառումներ մշակեն սոցիալիստական բոլոր պարտավորությունները կատարելու և պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները հետևողականորեն կենսագործելու համար։

Լայնորեն քննելով արտադրության զարգացման հարցերը, վեր հանելով թերություններն ու նշելով դրանց վերացման ուղիները, հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների տեսադաշտից չպետք է վրիպեն սովետական մարդկանց նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների հետագա բարելավման հարցերը։ «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության» լոզունգը պետք է իր մարմնավորումը գտնի պարտիական կազմակերպությունների ամենօրյա գործունեության մեջ։ Հետևապես այն բոլոր հարցերը, որոնք կապված են կոմունիզմ կառուցող մարդու կենցաղի, նրա կյանքի պայմանների բարելավման հետ, պետք է պատշաճ տեղ գտնեն հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման և անցկացման ընթացքում։

Լուրջ ուշադրություն պետք է նվիրել մասսաների և կոմունիստների մեջ տարվող գաղափարական աշխատանքին։ Առաջներում քիչ դեպքեր չեն եղել, որ այդ հարցը հաշվետու զեկուցման մեջ կամ բոլորովին չի շոշափվել կամ այդ մասին խոսվել է կողմնակիորեն։ Դա լուրջ թերություն է, որն առաջիկա հաշվետու-ընտրական ժողովներում տեղ չպետք է գտնի։ Անհրաժեշտ է ղեկավարվել պարտիայի XXII համագումարի այն ցուցումով, որ գաղափարական



աշխատանքի ուժեղացումը հանդիսանում է պարտիայի կարևոր հարցերից մեկը, նրա ամբողջ պրակտիկ գործունեության կարևորագույն նախապայմանը։ Կոմունիզմի շինարարության շահերը պահանջում են, որ կոմունիստական դաստիարակության հարցերը և, առաջին հերթին, նոր սերնդի դաստիարակության հարցերը, գտնվեն պարտիայի կազմակերպությունների ամենօրյա գործունեության կենտրոնում։ Սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտավոր են մշտապես կատարելագործել աշխատավորների կոմունիստական դաստիարակության ձևերն ու մեթոդները, ամեն օր ուղղություն տալ և հսկել պրոպագանդիստների, ագիտատորների, զեկուցողների և ստորին մամուլի գործունեությանը։ Այն, թե յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպություն ինչպես է կատարում այս պարտականությունները, մարդկանց ինչպես է դաստիարակում կոմունիստական բարոյականության ոգով, նույնպես պետք է հանգամանորեն քննարկել հաշվետու-ընտրական ժողովներում։

Պարտիական կազմակերպությունների հաջող գործունեության կարևոր նախապայման է հանդիսանում պարտիական կյանքի լենինյան նորմերի՝ կոլեկտիվ ղեկավարության, ներպարտիական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության սկզբունքների ճիշտ կիրառումը։ Այս հարցերը իրենց արժանի տեղը պետք է գտնեն հաշվետու-ընտրական ժողովներում։ Գալով հաշվետու-ընտրական ժողով, կոմունիստները պարտավոր են հոգ տանել այն մասին, որպեսզի այնտեղ ստեղծվի կոլեկտիվ ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ, որը հնարավորություն կընձեռի իսկական ազատ և անկաշկանդ մտքերի փոխանակման, պրակտիկ աշխատանքի բոլոր հարցերի գործարար քննարկման։ Դա հնարավորություն կտա ընդունված որոշումներում լայնորեն արտացոլել կոլեկտիվ փորձը, ավելի խոր կերպով բացահայտել աշխատանքում եղած թերությունները և ուղիներ նշել դրանք վերացնելու համար։

Իսկ որպեսզի հասնել այդ բոլորին, անհրաժեշտ է, որ ժողովներում լայնորեն ծավալվի քննադատությունը։ Պետք է ստեղծել այնպիսի պայմաններ, որ կոմունիստները ազատ, համարձակորեն ծավալեն քննադատությունը, վեր հանեն թերությունները, ցույց տան դրանց կոնկրետ կրողներին, չվախենան առողջ քննադատության հետևանքից, արտահայտեն իրենց կարծիքները, հանդես գան առաջարկություններով։ Այսպիսի մթնոլորտ կստեղծվի միայն այն դեպքում, երբ ժողովը նախօրոք լավ նախապատրաստվի, երբ հաշվետու զեկուցումը կազմված լինի օբյեկտիվորեն, ինքնաքննադատաբար և լրիվ արտացոլի տվյալ հիմնարկի կամ ձեռնարկության իսկական վիճակը։

Հաշվետու-ընտրական ժողովների հիմնական խնդիրներից մեկը սկզբնական պարտկազմակերպությունների ղեկավար օրգանների ընտրությունն է։ Թե ինչքանով այդ նոր օրգանները կկարողանան կատարել իրենց վրա դրված խնդիրները, ինչպես նրանց կհաջողվի մոբիլիզացնել պարտիական կազմակերպությանը և կոլեկտիվի ուժերը՝ հետագա հաջողությունները ձեռք բերելու համար, մեծ բանով կախված է հաշվետու-ընտրական ժողովից։ Այստեղ կոմունիստները պետք է բարձր պատասխանատվություն ցուցաբերեն կազմակերպության ղեկավար օրգան ընտրելիս։ Հարցը նրանումն է, որ պարտիական կոմիտեների, բյուրոների կազմում, ինչպես նաև քարտուղարներ և նրանց տեղակալներ ընտրվեն բանիմաց, փորձված և գործունյա մարդիկ, որոնք կկարո-

ղանան արդարացնել իրենց վրա դրված հույսերը, կապահովեն առաջադրված
խնդիրների կատարումը:
Հաշվետու-ընտրական ժողովները հնարավորություն կտան սկզբնական
պարտիական կազմակերպությունների ղեկավար օրգանում ընդգրկելու բազ-
մաթիվ նոր մարդիկ: Ինչպես հայտնի է, ՍՄԿԳ նոր Կանոնադրության համա-
ձայն սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավար օրգանների
կազմը պետք է թարմացվի և ամեն ընտրության ժամանակ կիսով չափ փոխ-
վի: Դա նշանակում է, որ ղեկավարության կգան հազարավոր նոր մարդիկ, այդ
թվում շատ կանայք, որոնք փորձված ղեկավար ընկերների հետ միասին կկա-
րողանան նոր աստիճանի բարձրացնել պարտիական կազմակերպությունների
գործունեությունը: Հաշվետու-ընտրական ժողովներում պետք է ապահովել
ամեն մի առաջարկված թեկնածության ազատ քննարկումը: Այս գործում չի
կարելի թույլ տալ շտապողականություն, որը կոմունիստներին կզրկի հաշվի
առնել առաջ քաշվող ընկերների բոլոր արժանիքներն ու թերությունները,
կշռադատել, թե նոր օրգանում նրանցից որը ինչ աշխատանք կարող է կատա-
րել:
Հաշվետու-ընտրական ժողովների բարձր մակարդակը, նրանց կազմա-
կերպված և գործարար մթնոլորտում անցկացնելը մեծ չափով կախված է նրա-
նից, թե այդ գործում պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեները ինչ-
պիսի կոնկրետ, օպերատիվ ղեկավարություն ու օգնություն ցույց կտան
սկզբնական կազմակերպություններին: Շատ կարևոր է, որպեսզի հաշվետու-
ընտրական ժողովներին մասնակցեն վերադաս պարտիական կոմիտեների քար-
տուղարներն ու անդամները: Անհրաժեշտ է որպեսզի նրանք լինեն ոչ միայն
խոշոր կազմակերպություններում, այլև փոքր, որոնք նույնպես օգնության կա-
րիք են զգում: Սակայն, հասկանալի է, որ պարտիական օրգանների ներկայա-
ցուցիչները չպետք է սահմանափակվեն ժողովներին սոսկ մասնակցելով: Նր-
րանք պարտավոր են նախօրոք օգնություն ցույց տալ տվյալ սկզբնական կազ-
մակերպությունում հաշվետու-ընտրական ժողովը լավ նախապատրաստելու և
ապա հաջող անցկացնելու: Նրանք պետք է հետևեն ժողովի ընթացքին, իրենց
հմտությամբ օգնեն կոմունիստներին, մտածված խորհուրդներով կանխեն
ոմանց սխալները:
Հաշվետու-ընտրական ժողովների գործարար և կազմակերպված անցկա-
ցումը էլ ավելի կնպաստի ներպարտիական դեմոկրատիայի հետագա ընդլայն-
մանը, կոմունիստների ստեղծագործական ակտիվության, սկզբնական կազ-
մակերպությունների մարտունակության բարձրացմանը. դրանով հնարավորու-
թյուն կստեղծվի աշխատավորության ուժերը լրիվ մոբիլիզացնելու և նորանոր
հաջողությունների հասնելու կոմունիստական շինարարության գործում:

# ՕՐՎԱ ՊԱՀԱՆՋԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

## Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Մարքսի և 26 կոմիսարների փողոցների խաչմերուկում վեր են բարձրա-
ցել Երևանի էլեկտրատեխնիկական փորձնական գործարանի կորպուսները:
Հեռվից դրանք թողնում են բազմահարկ բնակելի շենքի տպավորություն, որի
երկու կողմից եզերում են ասֆալտապատ, լայն ու բարեկարգ փողոցներ:
Հետիոտն, տրամվայով կամ տրոլեյբուսով անցնելիս, մայրաքաղաքի
բնակիչներն առանձին սիրով են դիտում գործարանի հոյակապ շենքը, հիա-
նում նրանով: Եվ ինչպես չհիանալ. չէ՞ որ դեռ երեկ, տեխնիկապես վատ զին-
ված փոքր գործարանի փոխարեն այսօր շարք է մտել մի այնպիսի ձեռնար-
կություն, որի արտադրանքը լայն ճանաչում է գտել մեր Հայրենիքում և նրա
սահմաններից դուրս:
Գործարանը մասնագիտացված է 0,6 մինչև 4,5 կիլովատ հզորությամբ
տարբեր քանակի պտուտաթիվ ունեցող և տարբեր նպատակների ծառայող
էլեկտրաշարժիչների արտադրության համար: Այդպիսի էլեկտրաշարժիչների
կարիքը մեծ է. դրանք հաստոցների ու այլ մեքենաների հոգին են, էլեկտրա-
էներգիայով նրանց գործողության մեջ դնելու հիմնական միջոցը: Այստեղից
էլ օրըստօրե աճող այն մեծ պահանջը, որ ներկայացվում է էլեկտրատեխնի-
կական գործարանին:

✲✲✲

Գործարանի բակում կողք-կողքի դրված են կոնտեյներներ: Բարձող մե-
քենան մոտենում է դրանց և մեկ-մեկ վերցնում ու տեղափոխում շարեշար
դարսված III և IV գաբարիտի էլեկտրաշարժիչների մոտ: Այստեղ մի քանի
բանվորներ էլեկտրաշարժիչները դնում են բաց արկղներում, խնամքով դասա-
վորում կոնտեյներների մեջ, լավ ամրացնում ու որից հետո տարբեր հասցե-
ներով ուղարկում երկաթուղային կայարան: Եվ այսպես, գործարանի արտա-
դրանքը անընդհատ հոսանքով մատակարարվում է ՍՍՌՄ մոտ 3000 ձեռնար-
կության և առաքվում արտասահմանյան 30 երկիր:
Փոքրածավալ այդ էլեկտրաշարժիչների թողարկումը արտաքուստ այնքան
էլ դժվար չի թվում: Այո, արտաքուստ այդպես է, մանավանդ կողմնակի մար-
դու համար, որը ծանոթ չի արտադրության տեխնոլոգիային: Բայց, եթե նա
շրջի գործարանի ցեխերում, կտեսնի, թե 1100-ից ավելի բանվորներ, ինժե-
ներներ ու տեխնիկներ ինչպիսի լարված աշխատանք են կատարում յուրա-
քանչյուր շարժիչի արտադրության վրա: Նրանք համանման ու տարբեր օպե-

րացիաների ընթացքում ուշադրությամբ մշակում ու հավաքում են բազմաթիվ մասեր, հաջորդականությամբ միացնում դրանք, ամբողջական տեսք տալիս շարժիչին, որը վերջում փորձարկման է ենթարկվում և ապա հանձնվում որպես պատրաստի արտադրանք։

Այդ բոլորը հեշտությամբ չի կատարվում։ Գործարանի կոլեկտիվը երբեմն լարված օրեր է ապրում, լուրջ դժվարություններ հաղթահարում։ Բանն այն է, որ գործարանը նոր է մտնում իր իսկական հունի մեջ, շատ ցեխեր ու տեղամասեր հիմնական վերակառուցման են ենթարկվում, նոր կորպուսներ են շահագործման հանձնվում, կատարելագործված տեխնիկա ներդրվում և այլն։ Դրանց հետ միաժամանակ խոշոր չափով ավելանում է արտադրանքի պլանը։ Բավական է ասել, որ 1962 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, էլեկտրաշարժիչների թողարկումը պետք է աճի մոտ 25 տոկոսով, 1965 թվականին՝ 2,5 անգամ։

Պլանը օրենք է և անպայմանորեն պետք է կատարվի։ Գործարանում ոչ ոք դրա դեմ առարկություն չունի, բոլորն էլ գտնում են, որ հնարավոր է սահմանված պլանը կատարել։ Բայց իրականում երբեմն այլ պատկեր ենք տեսնում—պլանը թերակատարվում է։ Այդպես էր վիճակը հատկապես 1960 և 1961 թվականներին։ Երբ արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններից հաղորդագրություններ էին ստացվում սոցիալիստական պարտավորությունների կատարման և արտադրական նորանոր հաջողությունների մասին, այստեղ «սայլը դեմ էր առել քարին», նույնիսկ չէին կատարվում պլանային առաջադրանքները։ Դրա համար գործարանի դիրեկցիայի, պարտիական կազմակերպության հասցեին տարբեր տեղերից լսվում էին կշտամբանքի խոսքեր, մամուլը կոլեկտիվին քննադատում էր ետ մնալու համար, իսկ վերադաս մարմինները պահանջում էին կատարել պլանը։

Ստեղծված վիճակից դուրս գալու համար պահանջվում էր վճռական քայլերի դիմել և ներքին ռեզերվների օգտագործմամբ ապահովել պետական պլանի կատարումը։ Դրան ամենից առաջ ձեռնամուխ եղան գործարանի կոմունիստները։ Նրանք, իհարկե, գիտեին, որ դեռևս պահանջվող քանակությամբ ձուլվածք չի ստացվում, առանձին ցեխեր ետ են մնում, բարվոք վիճակում չէ աշխատանքային կարգապահությունը և այլն։ Այդ թերությունները հնարավոր էր կարճ ժամանակում հաղթահարել։ Բայց կար առավել դժվար մի հարց, որն ակելի շատ էր անհանգստացնում գործարանի կոմունիստներին։ Դա նոր տեխնիկայի ներդրման, եղած սարքավորումների ու արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման հարցն էր, առանց որի լուծման հնարավոր չէ առաջ շարժվել։ Ահա թե ինչու կոմունիստներն առաջարկեցին բռնել հիմնական օղակից՝ տեխնիկայի արդյունավետ օգտագործումից, որպեսզի ճիշտ համամասնություն ստեղծվի աճող պլանի և արտադրության տեխնիկական զինվածության մակարդակի միջև։

Պարտիական կազմակերպությունը պաշտպանեց կոմունիստների առաջարկությունը։ Այդ հարցը քննարկման առարկա դարձավ պարտիական ժողովում, արտադրական խորհրդակցություններում։

Դրան հաջորդեց պրակտիկ աշխատանքը. ամբողջ կոլեկտիվի ջանքերն ուղղվեցին տեխնիկական միջոցառումների կիրառման ուղղությամբ։ Այդ գործում առավել ակտիվ մասնակցություն ցուցաբերեցին ռացիոնալիզատորները, արտադրության առաջավորներն ու մասնագետները։



Ռացիոնալիզատորներից առանձնապես աչքի ընկավ անվանի փականագործ, կոմունիստ Վլադիմիր Մաշալովը, որը բազմաթիվ արժեքավոր առաջարկությունների հեղինակ է։ Նրա ստեղծագործ մտքի ու վարժ ձեռքերի արդյունք է III և IV գաբարիտի ռոտորի թիթեղների փաթաթավորման նոր հարմարանքը, որի շնորհիվ կատարելագործվեց ռոտորի թերթերի սեղմման և ալյումինի ձուլվածքի լցման պրոցեսը։ Ռացիոնալիզատորական այս առաջարկության ներդրումից տարեկան ստացվում է 7500 ռ. օգուտ։

Մաշալովի մեկ այլ գյուտի կիրառման շնորհիվ մի պրոցեսում, ուր առաջ դետալի մշակումը կատարվում էր երեք օր, այժմ դա կատարվում է մեկ օրում և տարեկան տնտեսվում 10—15 հազար ռուբլի։

Եղբայրական Վրաստանից գործարանը ստացել էր ատամնավոր անիվների պատրաստման պատվեր։ Վերանորոգման ցեխի պետ, կոմունիստ Մարտին Զախարյանը խոստացավ սեղմ ժամկետում կատարել պատվերը։ Սեփական նախաձեռնությամբ նա եղած միակ ունիվերսալ հաստոցի վրա դրեց նոր, լրացուցիչ հարմարանք, որի գործադրմամբ մեծ չափով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և պատվերը կատարվեց սահմանված ժամկետից շուտ։ Մ. Զախարյանի նորարարության շնորհիվ նույն աշխատանքը նախկինի 3—4 օրվա փոխարեն այժմ կատարվում է մեկ օրում և տարեկան տնտեսվում է 22.000 ռուբլի։

Մամլման ցեխում գործում են տարբեր հզորությամբ 20 հաստոցներ, որոնք ունեն շարժական երիթ (шпонка передвижная)։ Դրանց մի կողմը մաշվելուց հետո փոխվում էր և նորերը պատրաստվում։ Նոր երիթի պատրաստումը և փոխումը տևում էր բավական ժամանակ, որի ընթացքում հաստոցը կանգնում էր և այդ այն պահին, երբ մամլման ցեխը շատ ետ էր մնում և արտադրանք չէր հասցնում մյուս ցեխերին։ Վերանորոգման ցեխի պետի տեղակալ, կոմունիստ Ռազմիկ Դավթյանը և կոմերիտական վարպետ Վելիխան Բադալյանը երկար պրպտումներից հետո գտան, որ երիթը կարելի է պատրաստել այնպես, որ օգտագործվի երկու կողմից։

Խելոք էր մտածված. այդ ուղղությամբ նրանց ռացիոնալիզատորական առաջարկությունն ընդունվեց և արագորեն ներդրվեց արտադրության մեջ, որով տնտեսվում է բավական մետաղ և տարեկան ստացվում է 2000 ռուբլու օգուտ։ Այս նույն ընկերների առաջարկությամբ զգալիորեն կատարելագործվեց նաև 25 տոննա հզորությամբ մամլիչի արգելուկը։

Գուցե որոշ ընկերներին սրանք մանրուք թվան։ Բայց չէ՞ որ մանրից է խոշորն առաջանում, կաթիլներից է գետը գոյանում։ Ավելին, մի այնպիսի արտադրություն, ինչպիսին էլեկտրաշարժիչներինն է, կապ ունի բազմաթիվ մանրուքների հետ, որոնցից յուրաքանչյուրն ունի իր նշանակությունը։ Ուստի ճիշտ են վարվում կոմունիստները, որոնք կոլեկտիվի հետ միասին զբաղվում են տեխնիկայի կատարելագործման ու աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ կապված ամեն մի «մանրուքով»։

Նրանք, իհարկե, կատարում են նաև բարդ ու խոշոր գործեր, որոնց մասին հետաքրքրական տեղեկություններ է հաղորդում ռացիոնալիզատորական ու գյուտարարական բյուրոյի քարտուղար Սերգեյ Բունիաթյանը։ Նա մեզ պատմեց, որ III գաբարիտի էլեկտրաշարժիչի կոնստրուկցիայի կատարելագործման ուղղությամբ մեծ արժեք ներկայացնող գործ են կատարել կոմունիստ ինժեներներ Ժորա Հայրապետյանը և Արա Նիկողոսյանը։

Ցանկացանք տեսնել նրանցից մեկին՝ Ժորա Հայրապետյանին, որը գոր-
ծարանի արտադրական բաժնի պետն է ու պարտիական կազմակերպության
երկրորդ քարտուղարը։ Ընկ Ս. Բունիաթյանի հետ գնում ենք նրա մոտ։ Հա-
մեստ կահավորում ունեցող մի փոքր սենյակում, գրասեղանի մոտ նստած է
կարճահասակ, շեկավուն մազերով ու խաժ աչքերով մի երիտասարդ։ Ծանո-
թանում ենք։ Առաջին իսկ հանդիպումից նա թողեց հաճելի տպավորություն։
Խնդրեցինք պատմել իր և Նիկողոսյանի նորարարության մասին։ Նա մի պահ
լռեց ու հետո համեստորեն ասաց.

— Լավ կլինի ուրիշների մասին պատմեմ։

— Մեզ հետաքրքրում է նաև ձեր գործը,— պնդեցինք մենք։

Նա ժպտաց, մի պահ մտածեց, հետո ծխախոտը վառեց ու հանգիստ տո-
նով պատմեց հետևյալը.

— Թանկարժեք մետաղների խնայողություն տալու առթիվ պարտիայի
Կենտկոմի Դիմումից հետո մենք որոշեցինք III գաբարիտի էլեկտրաշարժիչի
կոնստրուկցիայի մեջ փոփոխություն մտցնել՝ խնայելով էլեկտրատեխնիկա-
կան պողպատաթերթը և պղնձալարը, որոնց արժեքը գերազանցում է էլեկ-
տրաշարժիչի մնացած բոլոր նյութերի արժեքին։ Կոնստրուկցիայում փոփո-
խություն մտցնելու և միաժամանակ շարժիչի նախկին հատկությունը և հզո-
րությունը պահպանելու համար երկար ամիսներ շարունակ մաթեմատիկա-
կան բարդ հաշվարկումներ կատարեցինք, լուրջ դժվարություններ կրեցինք,
մինչև տվյալ գաբարիտի 12 տեսակներից մեկի՝ AO—32 էլեկտրաշարժիչի վրա
գտանք նոր կոնստրուկցիայի ամենաօպտիմալ վարիանտը, որը հիմնական
էր, մեր նպատակին հասնելու գլխավոր միջոցը։ Դրանից հետո մեզ օգնեց այն,
երբ գործարանն անցավ էմալապատ լարերի օգտագործման, որը հնարավորու-
թյուն տվեց ստատորի ակոսում ավելի շատ լարեր տեղավորել և դրա փոխա-
րեն թանկարժեք ակտիվ մասերը 10—15 տոկոսով կրճատել։

Սակայն նոր կոնստրուկցիայի շարժիչի արտադրությունը կապված էր
մեկ դժվարության հետ ևս. չկային համապատասխան հարմարանքներ։ Բայց
գործարանի դիրեկցիայի օգնությամբ հաղթահարվեց նաև այդ դժվարությունը։
Ցեխերում դրվեցին ժամանակակից նոր հարմարանքներ, որոնց միջոցով ա-
պահովեց կատարելագործված շարժիչի մասսայական արտադրությունը։

— Իսկ գործարանը դրանից ի՞նչ օգուտ ստացավ,— հարցրինք մենք։

— Տարեկան մոտ 50 հազար ռուբլի,— պատասխանեց Հայրապետյանը և
սկսեց ավելի աշխուժորեն պատմել պղնձալարի տնտեսման նպատակով կա-
տարված մեկ այլ արժեքավոր նախաձեռնության մասին։

— Գործարանի գլխավոր կոնստրուկտոր, կոմունիստ Արա Նիկողոսյանը,
փաթաթման ցեխի պետ Գևորգ Շահինյանը, փաթաթող բանվորուհիներ Գեղե-
ցիկ Սահակյանի, Արաքսյա Սերոբյանի և մյուսների օգնությամբ A—41—4
էլեկտրաշարժիչի վրա երկար ժամանակ փորձեր էր կատարում պղնձալարը
ալյումինե լարերով փոխելու ուղղությամբ։ Համառ ու քրտնաջան աշխատան-
քով նա հասավ իր նպատակին։ A—41—4 էլեկտրաշարժիչի նոր կոնստրուկ-
ցիայի շնորհիվ տարեկան տնտեսվում է 30 տոննա պղնձալար։ Այդ քանակու-
թյամբ թանկարժեք պղնձալարի փոխարեն օգտագործվում է 22 տոննա ալյու-
մինե լար, որը դեֆիցիտային չէ և անհամեմատ էժան է։

Գործարանում փորձեր են կատարվում մյուս տեսակի էլեկտրաշարժիչնե-
րի վրա ևս ալյումինե լարեր օգտագործելու։ Այդ լավ է։ Բայց գործարանի



ղեկավարությունը և առանձնապես արտադրական բաժինը դեռևս լուրջ կերպով
չեն զբաղվում ալյումինե լարերով A—41—4 էլեկտրաշարժիչի թողարկման
պլանի կատարման հարցով։ Ներելի չէ, երբ պլանավորված 15.000 հատ այդ
շարժիչից մինչև օրս թողարկված է 3000 հատ։

Առաջ բոլոր էլեկտրաշարժիչների փաթաթվածքը հագեցվում էր ասֆալտ-
բիտումային լաքերով, որոնք բացվում էին բենզինով։ Դա ձեռնտու չէր։ Հարց
դրվեց օգտագործել սինթետիկ նոր լաքը՝ անցնելով ջրա-էմուլսային հագեց-
ման առաջավոր տեխնոլոգիային, որի շնորհիվ բարձրանում է էլեկտրաշար-
ժիչների որակը, երկարակեցությունը, ապահովվում է աշխատանքի անվտան-
գությունն ու օդի մաքրությունը։ Այս կարևոր գործը նույնպես իրենց ձեռքը
վերցրին կոմունիստները։ Նրանցից Մեդորա Ավետիսյանը (գլխավոր տեխնո-
լոգի բաժնից) և Գևորգ Շահինյանը (փաթաթման ցեխից) բանվորների հետ
միասին երկար փորձեր կատարեցին և ապահովեցին նոր տեխնոլոգիայի կի-
րառումը։ Այժմ ջրա-էմուլսային սինթետիկ լաքով հագեցվում է փաթաթվածք-
ների քառորդ մասը։ Դա նոր գործի լավ սկիզբն է։ Կանցնի որոշ ժամանակ և
բոլոր փաթաթվածքները կհագեցվեն այդ եղանակով։

Կոմունիստները գերմարդիկ չեն։ Նրանք ևս ունենում են թերություններ,
անհաջողություններ, երբեմն կանգնում են լուրջ դժվարությունների առաջ։
Բայց նրանք չեն վհատվում, բացեիբաց ասում են դժվարությունների մասին
և դիմում ընկերների ու կոլեկտիվի օգնությանը։ Այդպես պատահեց կոմունիստ
Թելման Եղիազարյանի հետ։

Քաղխմբակի պարապմունքներից մեկի ժամանակ, երբ պրոպագանդիստ
Վոլոդյա Սիմոնյանը խոսում էր աշխատատար պրոցեսների մեքենայացման և
այդ միջոցով աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին,
ունկնդիրներից փականագործ Թ. Եղիազարյանը նստած տեղում անհանգիստ
շարժումներ կատարեց և սպա խոսք խնդրեց։ Դիմելով պրոպագանդիստին,
նա ասաց.

— Միայն խոսքն իմ աշխատանքի մասին է, պա՛րզ պետք է ասեմ։

— Ավելի լավ, դա կարևոր է,— ասաց պրոպագանդիստը։

— Ես հենոցներ եմ մշակում,— ասաց Եղիազարյանը,— գործը դժվար է,
անընդհատ ֆիզիկական ծանր աշխատանք եմ կատարում, բայց արդյունքը
քիչ է։ Փաստորեն չեմ կարողանում պլանը կատարել։ Ընկերները ինձանից հե-
նոց են պահանջում, երբեմն էլ կշտամբում որպես ետ մնացողի։ Դրանից ես
ամաչում եմ, անհարմար զգում։ Խնդրում եմ ասեք. այդ վիճակից դուրս գալու
համար ի՞նչ պետք է անել։

Պրոպագանդիստը խոր մտածմունքի մեջ ընկավ։ Ասել, թե՛ պետք է լավ
աշխատել, ուժ ու եռանդ չխնայել... բայց չէ՛ որ Եղիազարյանը այդպիսի աշ-
խատող է։ Մտածում էր նա և տվյալ մոմենտին որոշակի պատասխան չէր
գտնում։

— Ես հաջորդ ժամին կպատասխանեմ ձեր հարցին,— ասաց պրոպագան-
դիստը։

Պարապմունքից հետո նա եղավ գործարանի գլխավոր ինժեներ Կարեն
Դեմիրճյանի մոտ, պատմեց գործի եղելությունը։ Գլխավոր ինժեներին ևս հու-
զեց այդ հարցը. չէ՛ որ հենոցների մշակումը խիստ ետ է մնում և պատճառ
դառնում մյուսների աշխատանքի ձգձգման։ Զուր չէ, որ առանց ուշացման նա
կազմակերպեց հենոցների փականագործական մշակման պրոցեսի ուսումնա-

*սիրությունը։ Պարզվեց, որ տեխնոլոգիական պրոցեսը տառապում է լուրջ թերություններով։ Ինժեներա-տեխնիկական անձնակազմը զբաղվեց այդ հարցով և ստեղծեց հենոցների մշակման նոր հարմարանք, որի շնորհիվ թեթևացավ Եղիազարյանի և մյուսների գործը, բարելավվեց արտադրանքի որակը և արագացվեց հենոցների մշակումը։*

*Հենոցների մշակումը կատարելագործելու ուղղությամբ մեկ նոր, ավելի արժեքավոր քայլ կատարեց գլխավոր ինժեների տեղակալ, անպարտիական Գեորգի Օհանջանյանը։ Նա տեսնում էր, թե ինչպես բանվորը մեկ ձեռքով բարձրացրած վիճակում բռնում է մինչև 30 կգ քաշ ունեցող դետալը, իսկ մյուս ձեռքով այն ձգելով ամրացնում հաստոցի վրա։ Դա ֆիզիկական մեծ լարվածություն է պահանջում։ Երիտասարդ ինժեները մտածեց հաստոցի վրա դետալի ամրացումը կատարել ճնշված օդով աշխատող հարմարանքի միջոցով։ Սակայն առաջին փորձն անհաջող անցավ։ Նա կատարեց երկրորդ, երրորդ փորձը, մինչև որ նպատակին հասավ։ Օհանջանյանի ստեղծած հարմարանքի միջոցով այժմ հաստոցի վրա դետալը ամրացվում է առանց ձեռքի ուժ գործադրելու։ Դրանով ոչ միայն բանվորների գործը թեթևացավ, այլև աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 10 տոկոսով։ Ներկայումս այդպիսի հարմարանքով գործում է 6 հաստոց, որից 4-ը գտնվում է № 3 ցեխում, իսկ 2-ը՝ № 4 ցեխում։*

*Հենոցների մշակման տեխնոլոգիայի կատարելագործումը ուրախություն պատճառեց բանվորներին։ Սակայն գլխավոր ինժեները դեռևս անհանգիստ էր. № 4 ցեխում չէր կարգավորված հենոցի փականի մշակումը, որի հետևանքով զգալի քանակությամբ խոտան էր առաջանում։ Բազմաթիվ հոգսերի հետ միասին նա սկսեց զբաղվել նաև այդ հարցով, որը պետք է լուծվեր կոնստրուկցիոն որոշ փոփոխություններ կատարելու միջոցով։ Ուշադիր զննումից հետո նա պարզեց, որ փականի ներքին անցքի մշակման միակ փոքր կտրիչն իր վրա կրում է ամբողջ ուժը, որից առաջանում են տատանումներ և չի պահպանվում տեխնիկապես սահմանված չափը—կլոր անցքերի փոխարեն ստացվում են էլիպսաձև անցքեր։*

*— Իսկ եթե՞ մեկ հատիչի փոխարեն ունենալ 6 հատ և ուժը հավասարաձև փոխադրել բոլորի վրա,— մտածեց գլխավոր ինժեները և հանգեց այն եզրակացության, որ այդ դեպքում տատանումներ չեն լինի, դրությունը կկայունանա և կպահպանվի սահմանված չափը։ Նա իր միտքը հայտնեց գլխավոր տեխնոլոգի բաժնին և պահանջեց համապատասխան միջոցների դիմել։ Շատ չանցած, գործը գլուխ եկավ—լուծվեց մեկ կարևոր հարց ևս։*

*Երբ զրուցում էինք Կարեն Դեմիրճյանի հետ (որը փոխարինում էր արձակուրդում գտնվող գործարանի դիրեկտոր ընկ. Ալանակյանին), նա իր կատարած գործերի մասին ոչ մի խոսք չասաց և ավելի շատ պատմեց չլուծված հարցերի և նեղ տեղերի մասին։ Նա կոմունիստին հատուկ սրտաբացությամբ մատնանշեց դեռևս գոյություն ունեցող հիմնական թերություններն ու դրանց պատճառները։*

*— Բայց մեր կոլեկտիվը լավ գործեր էլ է կատարել,— ասաց նա ու թեթև ժպտաց, որն ավելի գրավիչ տեսք տվեց նրա խոհուն դեմքին ու սևորակ աչքերին։ Բավական է ասել,— շարունակեց Դեմիրճյանը,— որ նոր կորպուսը շահագործման հանձնվեց համարյա կոլեկտիվի սեփական ուժերով։*

*Չնայած իր երիտասարդ հասակին, գլխավոր ինժեներն անցել է նաև*



*կյանքի դպրոցը և գիտե գնահատել արտադրության մեջ աշխատող մարդկանց լավ գործերը։ Իսկ գործարանի մարդիկ, որոնց ավանգարդում ընթանում են կոմունիստները, քիչ լավ գործեր չեն կատարել։ Նրանց ջանքերով վերջերս օգտագործման հանձնվեց հիդրոպատճենահան կիսաավտոմատ երկու նոր հաստոց, որոնք գործող սովորական հաստոցների համեմատությամբ երեք անգամ ավելի շատ արտադրանք են տալիս և ապահովում լիսեռների մեխանիկական մշակումը։*

*Ընթացիկ տարում գործի են դրվել նաև վահանիկների մեխանիկական մշակման կիսաավտոմատ ագրեգատային երկու նոր հաստոց, որոնցից յուրաքանչյուրը փոխարինում է նախկինում գործող երեք սովորական հաստոցի։*

*Ինչպես երկրի մյուս ձեռնարկություններում, այնպես էլ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում մինչև օրս ստատորների և ռոտորների փաթաթումը չի մեքենայացված և, բանվորների մոտ 20 տոկոսը զբաղված է այդ գործողության կատարումով։ Հաշվի առնելով այդ, էլեկտրատեխնիկական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կողմից պատրաստված են փաթաթող կիսաավտոմատ փորձնական հաստոցներ, որոնցից երկուսն ուղարկված են էլեկտրատեխնիկական գործարանին։*

*Սկզբնական շրջանում տեխնիկական լուրջ թերությունների հետևանքով հնարավոր չէր այդ մեքենաներն օգտագործել. դրանց ինդուկցիոն կոճերը և ռելեները շարքից դուրս էին գալիս, իսկ արտադրանքը խոտան էր։ Սակայն դա չէր ընկճում գործարանի ընկերներին։ Նրանց խնդրանքով Մոսկվայի էլեկտրատեխնիկական գիտահետազոտական ինստիտուտից մասնագետներ եկան՝ նկատվող թերությունները վերացնելու համար։ Սրանց հետ միասին երկար ժամանակ լարված աշխատեցին կոմունիստներ Էդիկ Պողոսյանը (ինժեներ), Ռոբերտ Սաֆարյանը (տեխնիկ) և մյուսները, մինչև որ մեքենաները «խելքի եկան» և հանձնվեցին շահագործման։*

*Նշված մեքենաները, որոնցից յուրաքանչյուրը փոխարինում է 5—6 փաթաթող բանվորի, արդեն ներդրված են արտադրության մեջ։ Բայց վատն այն է, որ դրանք դեռևս իրենց լրիվ կարողությամբ չեն օգտագործվում։*

*— Այդ մեքենաների համար,— պատմում է նոր տեխնիկայի ներդրման պարտիական վերահսկող հանձնաժողովի նախագահ Մ. Գալֆայանը,— Երևանի կաբելի գործարանից ստանում ենք 1,2 կգ քաշով պղնձալարի կոճեր, որոնց յուրաքանչյուր փաթաթումը տևում է 5 րոպե, իսկ նոր կոճ դնելու և ծայրերը միացնելու համար դրանից ավելի ժամանակ է պահանջվում։ Ահա՛ թե ինչու մենք առաջարկություն ենք մտցրել, որպեսզի գործարանին տրամադրվեն 8—10 կգ քաշով պղնձալարի կոճեր։ Եթե այդպիսի քաշով կոճերի ստացման և կադրերի պատրաստման հարցը լուծվի, այդ արժեքավոր մեքենաները ավելի շատ արտադրանք կտան և լայն տարածում կստանան։ Դրանով իսկ փաթաթման ցեխում հիմնական աշխատատար պրոցեսը մեքենայացման կենթարկվի. զգալի չափով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը և կիջնի արտադրանքի ինքնարժեքը։*

*Նոր տեխնիկայի ներդրման, եղած սարքավորումների ու արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման բնագավառում կոմունիստները դժվար թե կարողանային այդքան աշխատանք կատարել, եթե չհենվեին կոլեկտիվի վրա, նրանից չստանային իրենց ուժը։ Բարձր գնահատելով կոլեկտիվի վճռական*

գերը, կոմունիստներն ընթացել են նրա հետ և աշխատանքում անձնական օրի-
նակ ցույց տվել։ Հետևելով կոմունիստ ռացիոնալիզատորների օրինակին, ան-
կուսակցական աշխատողներից ձուլման ցեխի տեխնոլոգ Համլետ Ասատրյանը,
վերանորոգման ցեխի խառատ Վարդան Օդաջյանը և մյուսները նույնպես հան-
դես են եկել արժեքավոր առաջարկություններով։

Կոլեկտիվի կողմից տեխնիկայի առավել օգտագործման բնագավառում
որոշակի քայլեր կատարելու և մի շարք այլ միջոցառումներ իրականացնելու
շնորհիվ գործարանը վերջապես դուրս եկավ նեղ տեղից և 1962 թվականի
առաջին եռամսյակում սոցիալիստական պարտավորությունների կատարման
գործում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար արժանացավ
ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի և քաղաքային Սովետի գործադիր կոմիտեի
փոխանցիկ դրոշին։

Հանդիսավոր իրադրության մեջ ընդունելով փոխանցիկ դրոշը, գործա-
րանի ղեկավարները խոստացան այն ամուր պահել, չզիջել ուրիշներին։ Դրա
համար, ի՛նչ խոսք, կային համապատասխան պայմաններ։ Բայց, ցավոք
սրտի, նրանք այդ պայմանները ինչպես հարկն է չօգտագործեցին, որի հե-
տևանքով էլ երկրորդ եռամսյակում սպասվող արդյունքին չհասան և ձեռքից
բաց թողին փոխանցիկ դրոշը։

Չնայած նրան, որ առաջին կիսամյակում գործարանը ապրանքային ար-
տադրանքի պլանը կատարել է 106,4, համախառն արտադրանքի պլանը՝ 107,8
տոկոսով և նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 24
տոկոսով ավելի էլեկտրաշարժիչներ է արտադրել, բայց, այնուամենայնիվ,
չի ապահովել ընթացիկ տարվա առաջին կիսամյակում իր առջև դրված խըն-
դիրների լրիվ կենսագործումը։ Այդ ժամանակամիջոցում էլեկտրաշարժիչների
ճառով արտադրության պլանը կատարված է 95,85 տոկոսով, այդ թվում IV
քառորդինը՝ 89,8 տոկոսով։ Էլեկտրաշարժիչների արտադրության պլանը
թերակատարվել է մայիս և հունիս ամիսներին։ Ավելին, այդ ամիսներին ավելի
քիչ էլեկտրաշարժիչներ են արտադրվել, քան մարտ և ապրիլ ամիսներին։ Էլ
չենք ասում այն մասին, որ հուլիս ամսին 24000 հատի փոխարեն արտադրվել
է 19338, իսկ օգոստոս ամսին՝ 25 հազար հատի փոխարեն՝ 21 հազար էլեկ-
տրաշարժիչ։

Ինչո՞ւ այդպես ստացվեց, ո՞րն է պատճառը։ Հիմնական պատճառներից
մեկն այն է, որ գործարանի դիրեկցիան ու պարտիական կազմակերպությունը
թուլացրին ուշադրությունը գ՛խավոր օղակի՝ նոր տեխնիկայի ներդրման և աշ-
խատանքի արտադրողականության բարձրացման նկատմամբ։ Ստացվեց այն-
պես, որ արտադրական պլանը աճեց, իսկ արտադրության միջոցներն ու նրանց
օգտագործումը համարյա մնացին նույն մակարդակի վրա։ Եվ դա այն պա-
հին, երբ վաղուց ստացված մոտ 250 հազար ռուբլու արժողությամբ նոր մե-
քենաներ դեռևս շահագործման չեն հանձնված։ Իսկ ինչո՞ւ. ո՞վ է մեղավոր։
Օբյեկտիվությունը պահանջում է ասել, որ այս գործում ամբողջ մեղքը միայն
գործարանի ընկերների վրա չի ընկնում։ Այսպես. 1961 թվականին գործա-
րանը ստացել է A—801 մարկայի բարձր արտադրողականությամբ 4 հատ ավ-
տոմատ մամլիչներ, որոնցից յուրաքանչյուրը նոր փողով արժե 54.211 ռուբլի
և կարող է փոխարինել ներկայումս գործող 5—6 սովորական հաստոցի։ Սա-
կայն A—801 մամլիչները դեռևս չեն օգտագործվում, որովհետև դրանց համար
անհրաժեշտ է էլեկտրատեխնիկական փաքաքված պողպատաթերթ, որպիսին



պլանավորող օրգանների կողմից չի նախատեսված և մինչև օրս էլ չի ստաց-
վում։

Զգալով, որ ավտոմատ նոր մամլիչների գործարկումով մամլման ցեխը
մեկընդմիշտ դուրս կգա նեղ վիճակից, դիրեկցիան ու պարտկոմը հարց դրին
սեփական ուժերով A—801 մամլիչներն այնպիսի վերակառուցման ենթարկել,
որ հնարավոր լինի օգտագործել 1,5 մետր երկարությամբ պողպատաթերթ։
Խնդիրը շատ դժվար էր, բայց խիստ անհրաժեշտ։ Դրա համար էլ առաջինը
գործի անցան կոմունիստ մասնագետները, որոնք մյուս ընկերների հետ
միասին սկսեցին այդ բարդ մեքենայի որոշ մասերի մասնակի վերակառու-
ցումը։ Նրանցից գ՛խավոր մեխանիկ Ռաֆիկ Հարությունյանը, փականագործ
Հարություն Սարգսյանը, կարգավորող Ժիրայր Արաբյանը և ուրիշները ամիս-
ներ շարունակ աշխատեցին և այնպես վերակառուցեցին մեքենան, որը կարո-
ղանում է մամլել 1,5 մետր երկարությամբ պողպատաթերթ։ Այդ մեքենաների
մամլակները պատրաստելու համար անհրաժեշտ է 2—A—450 կոորդինատային
ներտաշիչ հաստոց, որի ստացումը, չգիտենք ինչու, պլանավորված է միայն
տարվա վերջին։

Ինչպես տեսնում ենք, նոր տեխնիկայի ներդրման ձգձգման պատճառը
երբեմն գործարանի սահմաններից դուրս է գալիս և վերոհիշյալ փաստը միակը
չէ։ Ահա մեկ օրինակ ևս։ Գլանի և ռոտորի մեխանիկական մշակման համար
Ժողտնտխորհի կողմից սահմանված պլանի համաձայն դեռևս 1961 թվականին
պետք է ստացվեր ավտոմատ գիծ, բայց չստացվեց և պլանը փոխադրվեց ըն-
թացիկ տարվա երրորդ եռամսյակում։

Նոր տեխնիկայի ներդրման ու արտադրության տեխնոլոգիայի կատարե-
լագործման բնագավառում անբավարար աշխատանք է կատարում նաև գոր-
ծարանի տեխնիկական ղեկավարությունը։ Չնայած նրան, որ պարտիական
կազմակերպությունը մի քանի անգամ անդրադարձել է այդ հարցին և համա-
պատասխան որոշումներ կայացրել, բայց գործը դանդաղ է ընթանում և չի
ապահովվում պլանով նախատեսված նոր տեխնիկայի ներդրումը։ Այսպես,
Ժողտնտխորհի կողմից նախատեսված նոր տեխնիկայի ներդրման պլանի երեք
կետից ո՛չ մեկը դեռ չի կատարված, իսկ ներգործարանային պլանի 9 կետից
կատարված է միայն 4-ը։

Նոր տեխնիկայի ներդրման և շահագործման վիճակի մասին պարտիական
կազմակերպության ապրիլի 20-ի որոշմամբ գործարանի դիրեկտոր ընկ. Ալա-
նակյանից և գ՛խավոր ինժեներ ընկ. Դեմիրճյանից պահանջված է «պատաս-
խանատվության ենթարկել նոր տեխնիկայի պ՛անով նախատեսված միջոց-
առումները ժամանակին չկատարողներին»։ Պահանջն իրավացի է, բայց կեն-
սագործման վրա հարկ եղած ուշադրություն չի նվիրվում։ Անհրաժեշտ ուշա-
դրություն չի հատկացվում նաև եղած տեխնիկայի ռացիոնալ օգտագործման
վրա։ Մեր այն հարցին, թե եղած ամբողջ տեխնիկայի կարողության ո՞ր տո-
կոսն է օգտագործվում. պլանային բաժնի աշխատակիցները պատասխանեցին,
որ «վերադասին ներկայացվող հաշվետվություններում այդպիսի պարագրաֆ
չկա» և իրենք այդ հարցով դեռ չեն զբաղվել։

Նոր տեխնիկայի ներդրման ու արտադրության տեխնոլոգիայի կատարե-
լագործման ուղղությամբ արդեն որոշակի քայլեր է կատարում էլեկտրատեխ-
նիկական համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Հայկական
ֆիլիալը։ Բայց անհասկանալի է, թե ինչո՞ւ գործարանի դիրեկցիան և պարտ-

կոմը կտրուկ միջոցների չեն դիմում ֆիլիալի կողմից ներկայացված մի շարք կարևոր միջոցառումների իրականացման համար։

Մենք վերևում պատմեցինք, թե տեխնիկայի ու արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում ինչպիսի շնորհակալ գործ են կատարում ռացիոնալիզատորները։ Նրանց նախաձեռնության զարգացումն ու լայնորեն տարածումը արտադրության բարձրացման կարևոր ռեզերվներից մեկն է։ Բայց այստեղ այդ ռեզերվի օգտագործման վրա դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրվում։ Այլապես ինչով բացատրել, երբ ընթացիկ տարվա առաջին հինգ ամսում ռացիոնալիզատորական առաջարկություններով հանդես են եկել բանվորների միայն չորս տոկոսը։ Ավելին, այդ ժամանակաշրջանում ստացված ռացիոնալիզատորական 56 առաջարկությունից արտադրության մեջ ներդրվել են միայն 17-ը։ Կան առաջարկություններ, որոնց ներդրման հարցը 2—3 տարի է, ինչ չի լուծվում։

Նման վիճակը հանդուրժելի չէ։ Գործարանի ղեկավարները նյութապես և բարոյապես պետք է ամեն կերպ խրախուսեն ռացիոնալիզատորներին, խտացնեն նրանց շարքերը և ապահովեն արժեքավոր առաջարկությունների ներդրումը։

Տարեկան հարյուր-հազարավոր էլեկտրաշարժիչներ արտադրելու համար գործարանին անհրաժեշտ են ավտոմատ և կիսաավտոմատ հաստոցներ։ Սակայն, առ այսօր, դրանք գործարանում մատների վրա կարելի է հաշվել։ Այդպիսի հաստոցներ ոչ միայն քիչ են ստացվում, այլ ստացվածներն էլ ձգձգումներով են տեղադրվում ու շահագործման հանձնվում։ Էլ չենք ասում այն մասին, որ մինչև օրս էլ չկան կոնվեյեր, ավտոմատ ու կիսաավտոմատ գծեր։

Նոր տեխնիկայի ներդրման ու լրիվ կարողությամբ օգտագործման ասպարեզում մեծ է ինժեներա-տեխնիկական անձնակազմի դերը։ Սակայն գործարանն ապահովված չէ այդպիսի կադրերով։ Բավական է ասել, որ ցեխերի պետերից և ոչ մեկը ինժեներ չէ։ Ինժեներներով ու մեխանիկներով ապահովված չլինելով հանդերձ, գործարանից մի շարք նման մասնագետներ աշխատանքի են վերցված գիտահետազոտական ինստիտուտներում։

Էլեկտրատեխնիկական փորձնական գործարանը մոտակա ժամանակներում վերածվելու է բարձր մեքենայացված ձեռնարկության և մեծ չափով ընդլայնվելու է նրա արտադրության ծավալը։ Հաշվի առնելով այդ, գործարանը պետք է ապահովել ինժեներներով, մեխանիկներով և մնայուն որակյալ բանվորական կադրերով, նրանց համար ապահովելով աշխատանքի համապատասխան պայմաններ։

Նոր տեխնիկայի ներդրման և եղած արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործման բնագավառում գործարանի դիրեկցիան, պարտիական կազմակերպությունը, ամբողջ կոլեկտիվը պետք է ավելի եռանդուն աշխատանք կատարեն։ Դա այն հիմնական օղակն է, որից պինդ բռնելով կարելի է հասնել նորանոր հաջողությունների։ Անգամ եղած արտադրական կարողությունների լրիվ օգտագործումը հնարավորություն կտա նվաճել հիմնական բնագիծը և էլեկտրաշարժիչների արտադրության տարեկան պլանը կատարել 103 տոկոսով։

---

# ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԴՊՐՈՑ

## Հ. ԱԼԻԽԱՆՅԱՆ

Մեր երկրում պետական գործերի կառավարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման գործին ակտիվորեն մասնակցում են միլիոնավոր սովետական քաղաքացիներ՝ անցնելով պետության կառավարման դպրոցը։ Այդպիսի կարևորագույն և միաժամանակ մասսայական դպրոց են հանդիսանում աշխատավորների դեպուտատների Սովետները՝ ժողովրդական իշխանության օրգանները։

Օրգանապես զուգակցելով ներկայացուցչական պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների գծերը, Սովետներն ավելի ու ավելի մեծ չափով են հանդես գալիս որպես հասարակական կազմակերպություններ՝ իրենց աշխատանքում ապահովելով մասսաների լայն ու անմիջական մասնակցությունը։ Սոցիալիստական պետականությունից աստիճանաբար կոմունիստական ինքնավարության անցման ժամանակաշրջանում պարտիան խնդիր է դնում՝ համակողմանիորեն ծավալել ու կատարելագործել սոցիալիստական դեմոկրատիան, անխտիր բոլոր քաղաքացիներին ակտիվորեն ներգրավել երկրի կառավարմանը, ուժեղացնել ժողովրդական վերահսկողությունը պետական ապարատի գործունեության նկատմամբ։

Ժողովրդական ինքնավարության ծիլերը հետզհետե ավելի ու ավելի տեսանելի են դառնում Սովետների աշխատանքում։ Հասարակական հիմունքներով ստեղծվել ու գործում են արտահաստիքային բաժիններ, խորհուրդներ, տեսչություններ, կոմիտեներ, որոնցում ներգրավված են հարյուր հազարավոր աշխատավորներ։

Ոչ լրիվ տվյալներով մեր ռեսպուբլիկայի քաղաքային ու շրջանային Սովետների գործկոմներում կազմակերպվել են արդյունաբերության ու շինարարության, գյուղատնտեսության, կուլտուրայի, առևտրի և այլ հիսունից ավելի արտահաստիքային բաժիններ, որոնց մեծ մասը հաջողությամբ իրենց վրա են վերցրել պետական ապարատի որոշ ֆունկցիաներ ու պարտականություններ։ Իրենց գործունեությամբ նրանք գործկոմներն ավելի են մոտեցնում բնակչության լայն խավերին, ներազդում պետական ապարատի աշխատանքի բարելավման, նրանց ճկունացման ու օպերատիվության վրա, հսկում ու հետևում ընդունած որոշումների կատարմանը։

Երևանի Սպանդարյանի շրջսովետի գործկոմի ապարատում ստեղծվել են առևտրի, տեղական արդյունաբերության և կուլտուրայի արտահաստիքային բաժիններ, որոնցում ընդգրկվել են մոտ 35 բանվորներ, մասնագետներ, թոշակառուներ և այլն։ Հասարակական հիմունքներով գործող վերոհիշյալ բաժիններն ունեն իրենց աշխատանքային պլանը, որը հաստատվում է գործադիր կո-

միտեի կողմից։ Հատկապես լավ է աշխատում արդյունաբերության բաժինը,
որի վարիչն է զորացրված սպա, դեպուտատ Գ. Մութաֆյանը. այսպես, բաժինը
բազմակողմանիորեն ուսումնասիրել է Կիրովի անվան կաՀույքի ֆաբրիկայի
գործունեությունը, պարզել, թե ինչու են թերակատարվում արտադրական
պլանները և ցածր է թողարկվող արտադրանքի որակը. ուսումնասիրման նյու-
թերի Հիման վրա շրջսովետի գործկոմը քննարկել է այդ Հարցը և ստեղծված
դրությունը բարելավելու նպատակով իրականացրել մի շարք գործնական մի-
ջոցառումներ։ Հետագայում բաժինն օգնել և վերաՀսկողություն է սաՀմանել
գործկոմի ընդունած որոշումը կատարելու նկատմամբ։

Արդյունավետ է աշխատում Ալավերդու շրջսովետի գործկոմի առևտրի ար-
տաՀաստիքային բաժինը (վարիչ Վ. ՇաՀվերդյան)։ Բաժինը պարբերաբար
դբաղվում է առևտրի կազմակերպման Հարցերով, օգնում է գործկոմին բարե-
լավելու բնակչության սպասարկումը։ Օրինակ, ուսումնասիրություններից մեկի
ժամանակ պարզվել էր, որ քաղաքի Կոմերիտմիության անվան թաղամասի
մթերային խանութն աշխատում է մեկ Հերթ և երեկոյան ժամերին բնակիչնե-
րը Հարկադրված էին լինում գնումներ կատարել քաղաքի կենտրոնում եղած
խանութներում։ Բաժնի ջանքերով կարգավորվեց վերոՀիշյալ Հարցը՝ ներկա-
յումս թաղամասի բոլոր խանութներն աշխատում են երկՀերթ և նորմալ կեր-
պով սպասարկում սպառողներին։

Ակտիվ գործունեություն են ծավալել նաև Հրազդանի շրջսովետի երեք ար-
տաՀաստիքային բաժինները։ Ինչպես գործկոմների արտաՀաստիքային բա-
ժինները, այնպես էլ մի շարք շրջաններում Հասարակական Հիմունքներով գոր-
ծող ՀրաՀանգիչները, Հանրօգուտ մեծ գործ են կատարում։

Քաղաքային ու շրջանային Սովետների և նրանց գործկոմների աշխատան-
քին մեծ օգնություն են ցույց տալիս թաղային ու տնային կոմիտեները, որոնց
անդամների թիվը Հասնում է մի քանի Հազարի։ Ի դեմս Հասարակական Հի-
մունքներով գործող այդ կոմիտեների, իշխանության տեղական օրգաններն ու-
նեն իրենց Հուսալի օգնականները. կոմիտեներն ակտիվորեն մասնակցում են
բնակավայրերի բարեկարգմանն ու ծառատնկմանը, բնակչությանը ներգրա-
վում Հասարակական գործերին, Հսկում և Հետևում են Սովետների որոշումնե-
րի կատարմանը։ Շատ տեղերում նրանց նախաձեռնությամբ և ուժերով ստեղծ-
վել են կարմիր անկյուններ, սպորտային Հրապարակներ, մանկական սենյակ-
ներ և այլն։ Նշանակալից է նաև տնային կառավարչություններին առընթեր
կոմունիստական կենցաղավարության օժանդակող խորՀուրդների աշխատան-
քը։ Շամշադինի շրջանում կանանց ու երեխաների դաստիարակության բնա-
գավառում բեղմնավոր աշխատանք են կատարում կանանց խորՀուրդները։
Գյուղական ու ավանային շատ Սովետներին առընթեր կազմակերպվել են ա-
վագների խորՀուրդներ։

Սովետական Հասարակության մեջ Հետզհետե ավելի է ընդլայնվում բարո-
յական ներազդման ոլորտը և Համապատասխանաբար նվազում վարչական
միջամտության անՀրաժեշտությունը։ Այդ պայմաններում կարևոր նշանակու-
թյուն է ստանում ժողովրդական դրուժինաների և ընկերական դատարանների
գործունեությունը։ Այժմ արդյունաբերական ձեռնարկություններում ու Հիմ-
նարկներում գործող ընկերական դատարաններից բացի, դատարաններ են
ստեղծվել թաղային ու տնային շատ կոմիտեներում։

Աշխատավորների նախաձեռնության ու ակտիվության նոր, վառ դրսևո-



րումն է վերաՀսկողության արտաՀաստիքային տեսչությունը։ «Պարտիան,—
ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— ժողովրդական վերաՀսկողության տեսչություն-
ները դիտում է որպես պետության գործերի կառավարմանը, օրինականության
խստիվ կիրառման նկատմամբ վերաՀսկողության իրականացմանը ժողովր-
դական լայն մասսաների ներգրավման ազդու գործիք, պետական ապարատի
կատարելագործման, բյուրոկրատիզմը արմատախիլ անելու, աշխատավորների
առաջարկների ժամանակին իրականացման գործիք»։

Ռեսպուբլիկայի Համարյա բոլոր քաղաքային-շրջանային ֆինանսական
բաժիններում ստեղծվել են Հասարակական տեսչություններ, որոնք գործնական
օգնություն են ցույց տալիս ֆինանսական օրգաններին։ Արդեն մի քանի ամիս
է, ինչ Կիրովականի շրջսովետի գործկոմի ֆինբաժնում գործում է արտաՀաս-
տիքային տեսչություն, որը մշտական վերաՀսկողություն է սաՀմանել Հաշտ-
քա-նախաՀաշվային կարգապաՀության պաՀպանման, բանվոր-ծառայողներից
գանձվող Հարկերի ճշտության վրա. տեսչության ուժերով ուսումնասիրվել են
Լերմոնտովի ու Ժդանովի սովխոզների, շրջսպառկոոպի ֆինանսական գործու-
նեությունը։ Երևան քաղաքում միայն վերջին ամիսներին արտաՀաստիքային
տեսչությունները ստուգումներ են անցկացրել 52 Հիմնարկ-ձեռնարկություննե-
րում։ Հայտաբերած ֆինանսական կարգապաՀության կոպիտ խախտումները
վերացնելու և Հետագայում կանխելու նպատակով իրականացվել են գործնա-
կան միջոցառումներ։

ԱրտաՀաստիքային տեսչություններ են ստեղծվել նաև վիճակագրական
օրգաններում, որոնց թիվն անցնում է 40-ից։ Լենինականում, օրինակ, այդ աշ-
խատանքներում ներգրավվել են Հիսուն ակտիվիստ։ Քաղաքի արդյունաբերա-
կան ձեռնարկություններում ստեղծվել են նաև Հասարակական վերաՀսկողու-
թյան խմբեր, որոնք աջակցում են ձեռնարկությունների պլանային-Հաշվային
աշխատողներին՝ ճիշտ կազմելու և ժամանակին ներկայացնելու Հաշվետվու-
թյուններն ու վիճակագրական տեղեկությունները։ Թոշակառուների շրջանում
աշխատանքը բարելավելու նպատակով մի շարք գործկոմների սոցապ բաժին-
ներում կազմակերպվել են Հասարակական խորՀուրդներ։

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացին Համեմատ աշխատավորական մաս-
սաները Հանդես են բերում ստեղծագործական բազմաթիվ արժեքավոր նախա-
ձեռնություններ, ծնունդ են առնում Հասարակական աշխատանքի նորանոր
ձևեր ու մեթոդներ։ Այսպես, ռեսպուբլիկայի ֆինանսական ու բանկային Հիմ-
նարկների մի քանի կոլեկտիվներ Հասարակական կարգով օգնում են արդյու-
նաբերական ձեռնարկություններին՝ բարելավելու ֆինանսական-տնտեսական
գործունեությունը, Հայտաբերելու և օգտագործելու ներքին ռեզերվներ։ Երևանի
Լենինյան շրջսովետի գործկոմի ֆինբաժնի աշխատակիցներն արդյունավետ
օգնություն են ցույց տվել կաշվե գալանտերեայի ֆաբրիկայի, կաշվի և բեռ-
նատար ավտոմեքենաների վերանորոգման գործարանների կոլեկտիվներին։
Պետբանկի Էջմիածնի, Թալինի և Արտաշատի բաժանմունքների օգնության
շնորՀիվ բարելավվել են վերոՀիշյալ շրջանների առանձին կոլտնտեսություննե-
րի ՀաշվապաՀական աշխատանքները։

Աշխատավորական լայն մասսաները պետության կառավարմանը մասնա-
կից են դառնում Հասարակական կազմակերպությունների միջոցով ու նրանց
ակտիվ օգնությամբ։ Օրինակ, արՀմիություններն իրենց գործունեության բոլոր
էտապներում սերտ կերպով Համագործակցել և Համագործակցում են պետա-

կան իշխանության օրգանների հետ, աշխատավորներին ներգրավելով պետու-
թյան կառավարման ու արտադրության ղեկավարման գործին: Արտադրության
պլանավորման ու կազմակերպման, աշխատանքի, աշխատավարձի և աշխա-
տավորության շահերը շոշափող այլ կարևոր հարցեր այժմ պետական ու տըն-
տեսական օրգանները, որպես կանոն, քննարկում ու լուծում են արհմիութենա-
կան կազմակերպությունների հետ միասին: Արհմիությունները վաղուց իրենց
վրա են վերցրել պետական այնպիսի կարևորագույն ֆունկցիաներ, ինչպիսիք
են պետական սոցիալական ապահովագրությունը և աշխատանքի պաշտպա-
նությունը:

Այս ամենը վկայում են այն մասին, որ պետական գործունեության որո-
շակի մասն արդեն մեզ մոտ կատարվում է հասարակական հիմունքներով:

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման պրոցեսում է՛լ ա-
վելի կաճի բնակչության ինքնագործ կազմակերպությունների դերը: Պետական
ու սովետական օրգաններին օժանդակելուց ու նրանց աշխատանքի վրա ներ-
ազդելուց նրանք աստիճանաբար իրենց վրա են վերցնելու ներկայումս պետու-
թյան կողմից իրականացվող շատ ֆունկցիաներ: Պետության առանձին ֆունկ-
ցիաների անցնելը հասարակական կազմակերպություններին, չի թուլացնի պե-
տության դերը կոմունիզմի կառուցման գործում, այլ ընդհակառակը՝ կընդ-
լայնի ու կամրապնդի սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքերը,
կապահովի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումն ու ծաղ-
կումը:

Պետական և սովետական օրգաններում հասարակական հիմունքների զար-
գացման ուղղությամբ դեռևս շատ բան կա անելու: Մի շարք տեղերում լավ չեն
գործում արտահաստիքային բաժինները, տեսչությունները, իսկ առանձին շըր-
ջաններում դրանք գոյություն ունեն միայն ձևականորեն:

Անհրաժեշտ է, որ պարտիական, սովետական ու արհմիութենական կազ-
մակերպություններն ամեն կերպ զարգացնեն աշխատավորների նախաձեռնու-
թյունը և ինքնագործունեությունը, գործը կազմակերպեն այնպես, որ պետու-
թյան կառավարման դպրոցն անցնեն նորանոր աշխատավորներ: Այժմ, երբ
լայն թափով զարգանում են հասարակական հիմունքները և մեծ թվով մարդիկ
են ներգրավվում պետական-սովետական աշխատանքում, առաջնակարգ նշա-
նակություն է ստանում ակտիվի ուսուցման ու դաստիարակության, նրանց
դրական փորձի ուսումնասիրման, ընդհանրացման ու մասսայականացման
գործը:

Հասարակական հիմունքների զարգացման հետ միաժամանակ սովետա-
կան հիմնարկների պարտիական կազմակերպությունները ամենօրյա ուշադրու-
թյուն պետք է հատկացնեն պետական ապարատի կատարելագործմանը, զու-
գահեռ օղակների վերացման, ապարատի պարզեցման ու էժանացման միջո-
ցառումների իրականացմանը, նրա հստակ ու ճկուն աշխատանքի ապահով-
մանը: Այդ տեսակետից կարևոր նշանակություն ունի, մասնավորապես, հաշ-
վա-հաշվարքային պրոցեսների մեքենայացումը:

Արտահաստիքային բաժինները, տեսչությունները և հասարակական աշ-
խատանքի մյուս ձևերն ու մեթոդները հանդիսանում են կոմունիստական ինք-
նավարության նախատիպերը: Պարտիական կազմակերպությունների խնդիրն
է՝ ամեն կերպ տարածել դրանք ու արմատավորել պետական ապարատում:

---

# ՈՐՈՇԱԿԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Հ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

Վարդաբլուրի կոլտնտեսության պարտբյուրոյի քարտուղար

Անասնաբուծությունը հանդիսանում է մեր՝ Ստեփանավանի շրջանի
Վարդաբլուր գյուղի կոլտնտեսության առաջատար ճյուղը: Վերջին տարիներին
այն նկատելիորեն աճել, ամրապնդվել է: Անցյալ տնտեսական տարում յուրա-
քանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրել ենք՝ 310
ցենտներ կաթ, 44,1 ցենտներ միս, 170 կգ բուրդ: Հողակլիմայական համանը-
ման պայմաններ ունեցող հարևան մի շարք կոլտնտեսությունների համեմա-
տությամբ, մեր տնտեսական ցուցանիշները վատ չեն:

Սակայն մեր կոմունիստներին, կոլտնտեսականներին չէր կարող գոհաց-
նել ձեռք բերվածը: Այդ մասին նրանք բարձրաձայն ասացին պարտիական այն
ժողովում, ուր քննարկվում էին ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որո-
շումները: Ժողովում բացահայտվեցին մեր աշխատանքի թույլ կողմերը, վրի-
պումները. բոլորի համար ակնհայտ դարձավ, որ աշխատել ենք մեր ունեցած
հնարավորություններից և ուժերից ցածր:

Հիմք ընդունելով պարտիայի մատնանշած միջոցառումները, մենք մշա-
կեցինք գործողության մեր սեփական պլանը: Վարդաբլուրցիները պարտավոր-
վեցին հենց ընթացիկ տարում նկատելիորեն ավելացնել անասնաբուծական
մթերքների արտադրությունը և հուսալի նախադրյալներ ստեղծել հետագա
առաջընթացի համար: Նրանք խոստացան 1962 թվականին, 1961 թվականի
համեմատությամբ, ավելի արտադրել 684 ցենտներ կաթ, 2 ցենտներ բուրդ,
77 ցենտներ միս և 30 հազար հատ ձու: Ահա այն բնագիծը, որի նվաճմանն
ուղղվեց պարտիական կազմակերպական ու քաղաքական ամբողջ աշխա-
տանքը:

Ստանձնելով բարձր պարտավորություններ, մենք քաջ գիտակցում էինք
դրանց իրականացման գործում եղած դժվարությունները: Ամենից առաջ հար-
կավոր էր լուրջ աշխատանք տանել մարդկանց հետ, նրանց նախապատրաստել
և օգնել՝ կատարելու անասնաբուծության զարգացման նախատեսած պլանը:
Հենց դա էլ եղավ մեր գործունեության ելակետը:

Մեր կոլտնտեսությունը հարուստ է ձեռներեց ու շնորհալի կազմակերպիչ-
ներով, հմուտ ու աշխատասեր մարդկանցով: Արդեն մի քանի տարի է, ինչ կոլ-
տնտեսությունը ղեկավարում է Արմենակ Ջանջուղազյանը, որը լավ է հասկա-
նում գյուղատնտեսության էկոնոմիկան: Արտադրության մեջ և, առանձնապես,
անասնապահական ֆերմաներում աշխատում են մեծ թվով պատանիներ ու
աղջիկներ, որոնցից շատերը հանրակրթական միջնակարգ դպրոցի շրջանա-
վարտներ են:

Հասկանալի է, որ փոփոխված պայմաններում անհրաժեշտ էր վերանայել
պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ավելի ուշադիր ունկնդրել
մարդկանց ձայնին, ճիշտ դասավորել կադրերը, զարգացնել նրանց ակտիվու-
թյունն ու նախաձեռնությունը:

Այդ առումով դաստիարակչական որոշ դեր խաղաց Ուկրաինական ՍՍՌ
Ժիտոմիրի մարզի Չեռնյախովսկի շրջանի «Մայիսի մեկ» կոլտնտեսության
օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Նադեժդա Զագլադայի
«Թանկ գնահատեք հողագործի պատիվը» հոդվածը: Այն ընթերցվեց բոլոր
ֆերմաներում ու բրիգադաներում, կազմակերպվեցին զրույցներ. միաժամա-
նակ Ն. Զագլադայի հոդվածը քննարկման դրեցին պարտիական ընդհանուր
ժողովում, որին մասնակցում էին մեծ թվով անպարտիականներ: Դա սրտա-
բաց խոսակցություն էր հողագործի պատվի, հանրային գործի նկատմամբ
յուրաքանչյուր աշխատողի պարտքի զգացման մասին:

Մեզ մոտ ամեն մի աշխատող լավ գիտե, թե ի՞նչ է անելու, ի՞նչ գործի
համար է անձամբ պատասխանատու: Մեր գյուղում բոլորն էլ աշխատում են
հանրային արտադրության մեջ:

Անասնաբուծության զարգացման վճռական պայմանը կերի կայուն բա-
զան է: Բնական բոլոր պայմաններում հանրային հոտը առատ, բարձրարժեք
և էժան կերով ապահովելու նպատակով պարտբյուրոն ու կոլտնտեսության
վարչությունը կոնկրետ միջոցների դիմեցին:

Մեզ մոտ բազմամյա խոտաբույսերը զբաղեցնում էին 215 հեկտար:
Ճիշտ է, խոտը բավականացնում էր, բայց դրանով չէր լուծվում կերի հարցը.
անասունների կերաբաժնում խիստ սակավ էին սննդարար նյութերը և հար-
կադրված էինք ամեն տարի հսկայական միջոցներ ծախսել դրանց ձեռք բերման
համար:

Վերանայեցինք կերային կուլտուրաների ցանքատարածությունների
ստրուկտուրան՝ մոտ 100 հեկտարով կրճատեցինք բազմամյա խոտաբույսերի
տարածությունը: Ազատված հողերի վրա ցանեցինք ավելի բարձր կերային
արժեք ունեցող կուլտուրաներ՝ 18,5 հեկտար ոլոռ, 6 հեկտար բակլա, 12 հեկ-
տար շաքարի ճակնդեղ, ինչպես և մոտ 54 հեկտարով ընդլայնեցինք եգիպտա-
ցորենի ու գարու ցանքերը: Եգիպտացորենի ցանքերի տակ դրվեց 135 հեկտար:
Դրանով հետապնդում էինք մի բան՝ նույն հողատարածություններից ստանալ
քանակով ավելի շատ և սպիտակուցներով ու պրոտեինով հարուստ կերային
միավորներ: Եթե անցյալ տարի ունեցել ենք ընդամենը 6880 կերի միավոր,
ապա մեր համեստ հաշվարկումներով ընթացիկ տարում այն կհասնի ոչ պա-
կաս, քան 12 հազարի: Իսկ դա նշանակում է՝ լրացուցիչ կերպով ստանալ 185
տոննա կաթ կամ 26 տոննա միս:

Այս տարի կուտակեցինք մեկուկես անգամ ավելի խոտ և երկու անգամ
շատ ծղոտ, ինչպես նաև 3400 տոննա սիլոս: Կերի համար կուտակել ենք նաև
50 տոննա գարի, 120 տոննա եգիպտացորենի հատիկ և այլն: Հարուստ բերք
հավաքեցինք ոլոռի ցանքատարածություններից. այսպես, հեկտարից ստաց-
վեց 280 ցենտներ սիլոսի զանգված, իսկ այլ տեղամասերից՝ 15,5 ցենտներ
հատիկ, 42 ցենտներ ոլոռի խոտ: Խոտաբույսերի բերքատվությունը բարձրաց-
նելու նպատակով, օրինակ, կոմունիստ գյուղատնտես Լիզա Վարդանյանի նա-
խաձեռնությամբ 11 հեկտար բնական մարգագետնի վրա կատարվեց արմատա-
կան բարելավում և ցանվեց բազմամյա խոտաբույսերի սերմացուների խառ-



նուրդ. և եթե անցյալներում մեկ հեկտարից ստացվում էր 6—8 ցենտներ խոտ,
ապա այս տարի ստացվեց մինչև 35 ցենտներ:

Այսպիսով, մեր տնտեսության անասուններն ապահովվեցին մեկ ու կես
տարվա լավորակ և համեմատաբար էժան կերով:

Վերջին տարիներին մեր կոլտնտեսությունում որոշակի աշխատանք է
կատարվել անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման,
անասունների ցեղի բարելավման ուղղությամբ:

Ներկայումս մեքենայացված են ոչխարների խուզը, գոմաղբի տեղափո-
խումը, կերի մշակումը, սիլոսի պատրաստման ու խոտի դիզման աշխատանք-
ները, գոմերում տեղադրված են ավտոմատ խմոցներ և այլն: Կառուցվում է
տիպային կովանոց, որտեղ մեքենայացվելու են աշխատատար բոլոր պրոցես-
ները, ինչպես և կաթնաապրանքային ֆերմայում տեղադրվել է կթի ավտոմատ
ագրեգատ: Մշակված պլանի համաձայն, մոտակա տարիներում լրիվ մեքենա-
յացվելու են անասնաբուծական աշխատատար բոլոր պրոցեսները, կառուցվե-
լու են հարմարավետ գոմեր, կաթի մշակման պունկտ և այլն:

Մեզ մոտ բուծվում է կովկասյան գորշ ցեղի տավարը, որը ստեղծվել է
տոհմային «Շվից» ցուլերի և տեղական կովերի տրամախաչումից: Դրա շնոր-
հիվ զգալիորեն ավելացել է կաթի արտադրությունը: Այդ բնագավառում աշ-
խատանքները շարունակվում են. այս տարի առանձնացվել են տոհմային 50
հորթեր, որոնց նկատմամբ տարվում է հատուկ խնամք ու կերակրում: Միա-
ժամանակ բարձրակիթ կովերի գլխաքանակն ավելացնելու նպատակով Լոռ-
վա տոհմաբուծական գործարանից վերջերս գնվել են կովեր ու մատղաշներ:
Ոչխարների ցեղի բարելավման շնորհիվ գարնան խուզից ստացվեց ոչ միայն
շատ բուրդ, այլև ստացվածի 90 տոկոսը կազմեց նուրբ և կիսանուրբ բուրդը.
անցյալ տարվա համեմատությամբ միայն բրդի որակի բարձրացումից (առա-
ջին խուզից) տնտեսությունը լրացուցիչ կերպով ստացավ 2500 ռուբլու եկա-
մուտ: Բարելավվում է նաև խոզերի ու հավերի ցեղը:

Մենք ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի և այլ միջոցներով
քաջալերում ենք անասնապահներին, պաշտպանում նրանց արժեքավոր նա-
խաձեռնությունները, ուսումնասիրում ու տարածում առաջավոր կթվորների,
հովիվների փորձը: Միաժամանակ պարտկազմակերպությունը լուրջ ուշադրու-
թյուն է հատկացնում աշխատավորների նյութական շահագրգռվածության
բարձրացման վրա: Ընթացիկ տարում մեզ մոտ մշակվել ու կիրառվում են
լրացուցիչ վարձատրության ավելի արդյունավետ ձևեր: Օրինակ, կաթնաապ-
րանքային ֆերմայում տարեկան պլանից ավելի արտադրած կաթի քսան տոկո-
սը տրվում է կթվորին, իսկ ամեն ամիս կաթի արտադրությունը տասը տոկոսով
բարձրացնելիս նա ստանում է 4 ռուբլի, 10 տոկոսից բարձրի դեպքում՝ 5
ռուբլի և այլն: Միաժամանակ կթվորն իրեն ամրացված բոլոր կովերի ծնը
հաջող ընդունելու և մատղաշներին անկորուստ պահպանելու դեպքում միան-
վագ ստանում է 25 ռուբլի: Իրենց աշխատանքի դիմաց, համապատասխանա-
բար, լրացուցիչ վարձատրություն են ստանում նաև անասնապահ-նախրապա-
հը, հորթապահը, բրիգադավարը, ֆերմայի վարիչը: Եվ պետք է տեսնել, թե
ինչպիսի ոգևորությամբ են աշխատում մեր անասնապահները, մրցում, թե
ով ավելի շատ կաթ կարտադրի: Ստացված արդյունքը շոշափելի է. անցյալ
տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ կաթի համախառն արտա-
դրանքը 1962 թ. վեց ամսում ավելացել է 800, մսինը՝ 20 ցենտներով:

Մեզ մոտ արմատավորվել է այսպիսի կարգ. ամեն ամիս յուրաքանչյուր ֆերմայում հրավիրում ենք ժողով, ուր հրապարակում ենք մրցության արդյունքները, նշում պարտավորությունները հաջող կատարած մարդկանց լավ աշխատանքը և վճարում նրանց հասանելիք դրամական լրացուցիչ վարձատրությունը։

Կերի կայուն բազայի ստեղծումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումն ու անասունների ցեղի բարելավումը նախադրյալներ են ստեղծել իջեցնելու անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։

Անցյալ տարի մեկ ցենտներ տավարի մսի ինքնարժեքը կազմել է 112 ռուբլի և դա այն ժամանակ, երբ պետությանը այն վաճառել ենք 60 ռուբլով։ Դա անտնտեսվարություն է, նման ձևով այլևս չէր կարելի վարել տնտեսությունը։ Անգամ պետության կողմից մսի գնման գները բարձրացնելուց հետո էլ ծախսերը չէր ծածկվում։

Այդպիսի վիճակին վերջ տալու համար պարտիական կազմակերպությունը որոշեց հասնել այն բանին, որ հենց այս տարի 50 տոկոսով իջեցվի տավարի մսի ինքնարժեքը, 2,5 անգամ պակասեցվեն խոզի և մոտ 2 անգամ թռչունի մսի արտադրության վրա կատարվող ծախսումները։ Դա դժվարին, բայց միանգամայն ռեալ գործ էր։

Այդ նպատակով վաճառվող բոլոր անասունները դրեցինք արոտային գիրացման ու բտման տակ։ Մինչև հիմա վաճառվող անասունների միջին կենդանի քաշը կազմել է՝ տավարինը՝ 300 կգ, խոզինը՝ 87 և ոչխարինը՝ 45 կգ. ավելի գեր են այն անասունները, որոնց վաճառելու ենք առաջիկայում։ Մյուս միջոցառումը՝ անկումների կանխումն էր։ Անցյալ տարի եղել է անասունների մեծ անկում, այսինքն՝ կորցրել ենք 43,3 ցենտներ միս։ Լավ խնամքի ու կերակրման, ինչպես և անասնաբուժական պրոֆիլակտիկ միջոցառումների իրականացման շնորհիվ անցած ութ ամսում ունեցել ենք անասունների շատ փոքր անկում։ Մեծ գործ է կատարված մայրական կազմի ստերջության վերացման, ինչպես և անարտադրողական ծախսերի կրճատման ուղղությամբ։

Նախնական հաշիվներով, 1962 թվականին զգալիորեն կպակասեն նաև կաթի, բրդի և ձվի արտադրության վրա կատարված ծախսումները։ Այդ ուղղությամբ առաջիկայում գործ շատ կա անելու։

Երբ հանրագումարի ենք բերում մեր պարտիական կազմակերպության ընթացիկ տարվա գործունեության նախնական արդյունքները, ապա պարզ է դառնում այն որոշ տեղաշարժերը, որ տեղի են ունեցել տնտեսության բոլոր ճյուղերում և, մասնավորապես, անասնաբուծության բնագավառում։ Ժամկետից շուտ կատարված են կաթի ու ձվի վաճառելու տարեկան առաջադրանքները, իսկ ութ ամսում մսի վաճառքի տարեկան պլանը կատարված է 90 տոկոսով։ Հոտի վերարտադրության հաշվին կատարված է նաև անասունների գլխաքանակի աճեցման տարեկան առաջադրանքը։

Մեր աշխատանքում դեռևս մնում են թերություններ, կան և չլուծված հարցեր։ Պարտիական կազմակերպությունը ջանում է ամեն ինչ անել արագորեն հաղթահարելու դժվարությունները և անասնաբուծությունը դարձնելու մեր տնտեսության բարձր եկամտաբեր ճյուղը։

---



# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԽԻՍՏ ԿԱՐԵՎՈՐ ՄԻ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարը նախանշեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունն առաջիկա քսան տարում ավելացնել այնպիսի ծավալով, որն ապահովի ինչպես բնակչության, այնպես էլ արդյունաբերության պահանջմունքների լրիվ բավարարումը։ Արագ տեմպերով զարգանալու է, մասնավորապես, անասնաբուծությունը։

Անասնաբուծական մթերքների արտադրության նախատեսված աճը ապահովվելու է մի կողմից՝ անասունների և թռչունների գլխաքանակի ավելացման, նրանց ցեղայնության բարելավման և մթերատվության բարձրացման, իսկ մյուս կողմից՝ կերի կայուն բազայի ստեղծման միջոցով։

Այս դժվարին խնդիրը հաջողությամբ լուծելու համար կպահանջվեն ուժերի մեծ լարում, եղած ռեզերվների հայտաբերում և օգտագործում, գիտության նվաճումների և առաջավոր փորձի լայն արմատավորում։

## ԿԵՐԻ ԿԱՅՈՒՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Հանրահայտ է, որ անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման գլխավոր պայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Մեզ մոտ առայժմ գոյություն ունեն կերի հայթայթման երկու հիմնական աղբյուրներ. առաջինը՝ դաշտային կերհայթայթումն է (վարելահողերի օգտագործումը կերային կուլտուրաներ մշակելու համար), երկրորդը՝ բնական արոտների և խոտհարքների օգտագործումը։ Սակայն բազմիցս նշվել է, որ անասնաբուծության ցածր մթերատվության հիմնական պատճառը կերի պակասն է։ Դա անվիճելի ճշմարտություն է։

ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումը արմատական միջոցառումներ մշակեց երկրագործության խոտադաշտային սիստեմը ինտենսիվ-շարահերկ սիստեմով փոխարինելու միջոցով կերի արտադրությունը զգալիորեն ավելացնելու համար։ Շատ կոլտնտեսություններ և սովխոզներ համարձակորեն լիկվիդացնելով իրենց չարդարացրած խոտադաշտային սիստեմը, վերանայեցին ցանքատարածությունների ստրուկտուրան և ընդլայնեցին այնպիսի արժեքավոր կուլտուրաների ցանքատարածությունները, ինչպիսիք են՝ եգիպտացորենը, շա-

քարի ճակնդեղը, ոլոռը, կերային ընդեղենները և այլն։ Անցյալ տարվա համեմատությամբ ՍՍՒՄ-ում եգիպտացորենի ցանքատարածությունները այս տարի ավելացան 11 միլիոն 300 հազար հեկտարով, ոլոռինը և կերային ընդեղեններինը՝ 3 միլիոն 349 հազարով, շաքարի ճակնդեղինը (կերի համար)՝ 1 միլիոն 400 հազար հեկտարով։

Առաջավոր տնտեսությունների օրինակով ապացուցված է, որ երկրագործության շարահերկ սիստեմի կիրառման դեպքում մեկ հեկտար վարելահողից կարելի է ստանալ երեք-չորս անգամ ավելի շատ բերք, քան խոտադաշտային սիստեմի ժամանակ։ Եթե բազմամյա խոտաբույսերի մեկ հեկտարից ստացվում է, միջին հաշվով, 35—40 ցենտներ խոտ կամ 1750—2000 կերի միավոր, ապա եգիպտացորենի ցանքատարածության մեկ հեկտարից, անգամ 250—300 ցենտներ կանաչ մասսայի բերքի դեպքում, ստացվում է 5000—6000 կերի միավոր։ Էլ ավելի շատ կերի միավոր է ստացվում շաքարի ճակնդեղից. հյութալի արմատապտղից բացի, յուրաքանչյուր հեկտարից, միաժամանակ կարելի է ստանալ 120—130 ցենտներ փրեր, որոնք նույնպես հարուստ են սննդանյութերով, մասնավորապես վիտամիններով ու հանքային նյութերով, այդ թվում և միկրոէլեմենտներով։

Կոշտ և հյութալի կերի կարևոր բազա են հանդիսանում բնական արոտներն ու խոտհարքները։ Բնական մարգագետինների արմատական բարելավման միջոցով կարելի է ստանալ գրեթե կրկնակի չափով ավելի շատ խոտ։ Այսպիսով ռեալ հնարավորություններ կան կարճ ժամանակամիջոցում զգալիորեն ընդլայնել անասնաբուծության կերի բազան խտացրած, կոշտ և հյութալի կերով։

Սակայն պետք է նկատի ունենալ, որ կերի բալանսում մենք դեռ ունենք սպիտակուցների լուրջ դեֆիցիտ, որը շատ բացասաբար է անդրադառնում ինչպես մատղաշ անասունների աճի-զարգացման, այնպես էլ հասակավոր կենդանիների մթերատվության և վերարտադրական ունակությունների վրա։

ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության տվյալների համաձայն ձմեռային շրջանում կերի բալանսում սպիտակուցների դեֆիցիտը ներկայումս կազմում է մոտ 25 տոկոս։ Հատկանշական է, որ կերային սպիտակուցների պրոբլեմի լուծման ակտուալությունը տարեցտարի աճում է մի կողմից՝ անասունների գլխաքանակի ավելացման և նրանց մթերատվության բարձրացման, իսկ մյուս կողմից՝ այնպիսի կերի մասսայական օգտագործման հետևանքով, ինչպիսիք են՝ եգիպտացորենի սիլոսը, շաքարի ճակնդեղը, կարտոֆիլը, որոնք, ինչպես հայտնի է, շատ քիչ սպիտակուցներ են պարունակում։ Հատիկա-ընդեղեն կուլտուրաների ցանքատարածությունների ընդլայնումն առաջին հերթին հենց այն նպատակն է հետապնդում, որպեսզի կենդանիների կերաբաժնում, մանավանդ մեծ քանակությամբ եգիպտացորենի սիլոս և շաքարի ճակնդեղ օգտագործելիս, լրացվի սպիտակուցների պակասը։ Սպիտակուցների պակասը լրացնելու աղբյուրներից են հանդիսանում նաև քուսպերը, թիթեռնածաղկավոր խոտաբույսերի ալյուրը, մսաոսկրային, արյան և ձկան ալյուրը, կաթի վերամշակման մնացուկները։ Սակայն դրանց արտադրությունը սահմանափակվում է վերամշակվող հիմնական հումքով։

Բայց կա կերային սպիտակուցի դեֆիցիտի լիկվիդացման մի կարևորագույն աղբյուր, որը դժբախտաբար թե՛ Միության մեջ և թե՛ մեր ռեսպուբլիկայում դեռ շատ վատ է օգտագործվում, կամ էլ բոլորովին չի օգտագործվում։ Մենք նկատի ունենք կերային շաքարասնկերի (դրոժների) արդյունաբերական



արտադրությունը ոչ սննդային հումքից։ Սպիտակուցի արտադրության այդ աղբյուրը գրեթե անսահմանափակ է, քանի որ շաքարասնկեր կարելի է ստանալ բուսական հումքի վերամշակման զանազան թափթփուկներից՝ ցանկացած քանակությամբ, առանց բարդ մեքենաների և մեծ քանակի էներգիայի ծախսման։

## ՇԱՔԱՐԱՍՆԿԵՐԻ ԿԵՐԱՅԻՆ ԱՐԺԵՔԸ ԵՎ ՍՆՆԴԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Հիդրոլիզային (կերային) շաքարասնկերը հանդիսանում են բարձր մոլեկուլային սպիտակուցի և մի շարք վիտամինների հարուստ աղբյուր։ Չոր կերային շաքարասնկերը պարունակում են մինչև 87—92 տոկոս չոր նյութ, այդ թվում 41—51 տոկոս հում պրոտեին (սպիտակուցներ), 27—39 տոկոս անազոտ էքստրակտային նյութեր (շաքարներ, օսլա), 1,76—3,5 տոկոս հում ճարպ, 0,20—1,32 տոկոս հում թաղանթանյութ և 6—9 տոկոս հում մոխիր։ Բերած տվյալները ցույց են տալիս, որ շաքարասնկերը շատ հարուստ են օրգանիզմի համար ամենակարևոր և անփոխարինելի սննդանյութով՝ սպիտակուցներով։ Կենդանու ծավալային աճը հիմնականում իրենից ներկայացնում է սպիտակուցային հյուսվածքների (մկանների) աճ, հետևաբար, կենդանուն ճիշտ կերակրել, մանավանդ երիտասարդ-աճող կենդանուն, նշանակում է ճիշտ կարգավորել նրա սպիտակուցային սնուցումը։ Կերաբաժնում սպիտակուցների պակասը ոչ միայն բացասաբար է անդրադառնում հյուսվածքային սպիտակուցների պահպանման և վերականգնման վրա, այլև առաջ է բերում օրգանիզմի ֆերմենտատիվ ապարատի խախտում և, որպես դրա հետևանք՝ նորմալ նյութափոխանակության խանգարում։

Շաքարասնկերը շատ հարուստ են նաև անփոխարինելի ամինոթթուներով՝ լիզինով, տրիպտոֆանով, արգինինով և հիստիդինով։ Բացի նշվածներից, շաքարասնկերը պարունակում են նաև ութ այլ ամինոթթուներ՝ տիրոզին, ֆենիլալանին, ցիստին, մետիոնին, տրեոնին, լեյցին, իզոլեյցին և վալին։ Ամինոթթուների այսպիսի հարուստ կազմով է բացատրվում, հիմնականում, շաքարասնկերի սպիտակուցների բիոլոգիական բարձր լիարժեքությունը։

Կերային շաքարասնկերը միաժամանակ ունեն մարսելիության շատ բարձր գործակից և այդ հատկանիշով էլ նկատելիորեն գերազանցում են անգամ կենդանական ծագում ունեցող սպիտակուցային կերին։ Էքսպերիմենտալ փորձերով հաստատված է, որ եթե ձկան ալյուրի մարսելիության գործակիցը կազմում է 76,64—82,63 տոկոս, ապա շաքարասնկերինը հասնում է 89—93-ի։

Սպիտակուցներից բացի, շաքարասնկերը հարուստ են նաև կյանքի համար շատ կարևոր B խմբին պատկանող վիտամիններով, իսկ ուլտրամանիշակագույն ճառագայթներով ճառագայթավորելու դեպքում շաքարասնկերը հարստանում են նաև $D_2$ (կալցիֆերոլ) հակառախիտային վիտամինով։

Բերած տվյալները ցույց են տալիս, որ շաքարասնկերը շատ բարձրարժեք և սննդարար կերանյութ են գյուղատնտեսական կենդանիների ու թռչունների համար, և լիովին կարող են փոխարինել կենդանական ծագում ունեցող դեֆիցիտային սպիտակուցային կերին։ Այդ ապացուցված է նաև փորձերով։ Աճող խոճկորների կերաբաժնում օրական 200 գրամ կերային շաքարասնկեր ավելացնելու դեպքում, նրանց քաշաճը, ստուգիչ խմբի համեմատությամբ, ավելանում է 15—17 տոկոսով, միաժամանակ 11 տոկոսով իջնում է մսի ինքնարժեքը։ Խոշոր եղջերավոր կենդանիների մատղաշների վրա դրված փորձերով

հաստատված է, որ հորթին օրական 150 գրամ շաքարասնկեր տալու դեպքում նրա քաշաճն ավելանում է 24 տոկոսով՝ մեկ կիլոգրամ քաշաճի վրա ծախսելով ընդամենը 1 կգ շաքարասնկեր։ Կերային շաքարասնկերը խթանում են կովերի կաթնատվությունը։ Կերաբաժնի մեջ լրացուցիչ շաքարասնկեր մտցնելու դեպքում նրանց օրական կաթնատվությունը ավելանում է 5—7 լիտրով։

Շաքարասնկերը նպաստում են նաև կաթի յուղայնության բարձրացմանը։ Փորձերով ապացուցված է, որ երբ կթվող կովերին հիմնական կերաբաժնից դուրս օրական տալիս են 3,3 լիտր թարմ գարեջրի շաքարասնկեր հեղուկ վիճակում (երեք օրում ընդամենը 10 լիտր), ապա նրանց կաթի մեջ ճարպի տոկոսն ավելանում է 0,43-ից մինչև 0,71, միջինը՝ 0,5 տոկոս։ Կաթի մեջ ճարպի այդպիսի բարձր տոկոսը պահպանվում է 1—1,5 ամսվա ընթացքում, իսկ երբեմն էլ՝ ավելի երկար։ Շաքարասնկերով նորից են սկսում կերակրել այն ժամանակ, երբ ճարպի տոկոսը կաթի մեջ սկսում է պակասել և մոտենալ ելակետային մակարդակին։ Շաքարասնկերի այդպիսի խթանիչ ներգործության ֆիզիոլոգիական մեխանիզմը բացահայտված է և գիտականորեն հիմնավորված։

Պետք է ասել, որ շաքարասնկերից բացի, մենք չենք կարող նշել որևէ մի այլ կերանյութ, որն այդպես ուժեղ խթաներ կաթի մեջ ճարպագոյացման պրոցեսը։ Իսկ թե ինչպիսի՞ խոշոր տնտեսական նշանակություն ունի կաթի մեջ ճարպի տոկոսի բարձրացումը, նշենք, որ եթե ճարպի տոկոսը կաթի մեջ ավելացվի միայն 0,1 տոկոսով, ապա դա Միության մասշտաբով լրացուցիչ կտա 30 հազար տոննա կաթնայուղ կամ 36 հազար տոննա կարագ, այսինքն՝ այնպիսի քանակությամբ յուղ, որ տալիս է 300 հազար կովը՝ 2600 լիտր միջին կաթնատվության դեպքում։ Իսկ եթե ճարպի տոկոսն ավելանա 0,5 տոկոսով, ապա լրացուցիչ կստացվի 180 հազար տոննա կարագ, որը հավասար է մեկ միլիոն 500 հազար կովի տարեկան արտադրանքին՝ 2600 լիտր միջին կաթնատվության դեպքում։

Էլ ավելի մեծ էֆեկտ են տալիս շաքարասնկերը գյուղատնտեսական թռչունների կերաբաժնին ոչ մեծ քանակով ավելացնելիս։ Մեր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հավերի կերաբաժնում ընդամենը 5 գրամ շաքարասնկեր ավելացնելու դեպքում, թռչունների ձվատվությունը ավելանում է 25,7—35,1 տոկոսով, նկատելիորեն բարձրանում է ձվի ինկուբացիոն որակը և ճտահանության տոկոսը։

Մի շարք փորձերով հաստատված է, որ կերաբաժնում շաքարասնկերի ավելացումը նպաստում է նաև կերային սննդանյութերի մարսելիության գործակցի նկատելի բարձրացմանը. դա նույնպես համոզեցուցիչ վկայում է շաքարասնկերի բիոլոգիական բարձր արժեքի մասին։

Ինչպես նշվեց, շաքարասնկերը, բացի լիարժեք սպիտակուցներից, հարուստ են նաև B խմբի վիտամիններով, իսկ ուլտրամանիշակագույն ճառագայթներով ճառագայթավորելիս նրանց մեջ գտնվող նախավիտամին էրգոստերինը վեր է ածվում $D_2$ վիտամինի։

Շաքարասնկերի օգտագործումը թռչնաբուծության մեջ, որպես վիտամինների աղբյուր, ավելի արդյունավետ և նպատակահարմար է, քան սինթետիկ վիտամինների օգտագործումը. դա բացատրվում է նրանով, որ բնական վիտամինները ֆիզիոլոգիական տեսակետից անհամեմատ ավելի ակտիվ են, քան սինթետիկ վիտամինների պրեպարատները։

Էքսպերիմենտալ հետազոտություններով պարզվել է, որ շաքարասնկերը



բարձր էֆեկտ են տալիս ոչ միայն մաքուր վիճակով կերաբաժնի մեջ մտցնելիս, այլև այն ժամանակ, երբ օգտագործվում են կերը դրոժավորելու համար։ Այդ դեպքում ծախսվում է շատ չնչին քանակությամբ շաքարասնկեր։

Դրոժավորելու հետևանքով կերը հարստանում է սպիտակուցներով, վիտամիններով և ֆերմենտներով, լավանում է նրանց համը, հոտը, որի շնորհիվ կենդանիները և թռչունները կերը ուտում են մեծ ախորժակով։ Դրոժավորված կերը նպաստում է գյուղատնտեսական կենդանիների և թռչունների մթերատվության բարձրացմանը և կրճատում կերի ծախսը։

Դեռ 1936—1938 թվականներին կատարած մեր ուսումնասիրությունները բացահայտեցին դրոժավորման շնորհիվ կերի մեջ առաջացող բիոքիմիական խոր փոփոխությունները, որով և բարձրանում է սննդանյութերի մարսելիության գործակիցը։ Այսպիսով դրոժավորված կերը ակտիվացնում է կենդանու օրգանիզմում տեղի ունեցող մի շարք ֆիզիոլոգիական պրոցեսները, մասնավորապես արյունագոյացման և նյութափոխանակության պրոցեսները։ Միաժամանակ պարզված է, որ դրոժավորված կերը պրոֆիլակտիկ դեր է խաղում և նպաստում է օրգանիզմի կենսունակության բարձրացմանը։

Բերված տվյալները ցույց են տալիս, որ շաքարասնկերը բարձրարժեք սպիտակուցա-վիտամինային կեր են, ընդ որում նրանց պարունակած սպիտակուցները աչքի են ընկնում բացառիկ լիարժեքությամբ, իսկ վիտամինները՝ շատ բարձր ֆիզիոլոգիական ակտիվությամբ։ Բացի սպիտակուցներից, մի շարք կարևորագույն ամինոթթուներից և վիտամիններից, շաքարասնկերը պարունակում են նաև դյուրամարս ածխաջրեր, ֆերմենտներ, հորմոններ և մի շարք հանքային նյութեր։ Ահա այս կարևորագույն սննդանյութերի և ֆիզիոլոգիական խթանիչների ամբողջական կոմպլեքսի առկայության շնորհիվ է, որ շաքարասնկերը այդքան դրական ներգործում են գյուղատնտեսական բոլոր կենդանիների, թռչունների, անգամ մորթատու գազանների և ձկների աճման, զարգացման կենսունակության և մթերատվության վրա։ Այս բոլորի հիմքում ընկած է կենդանու օրգանիզմում նյութափոխանակության ակտիվացումը։

Վերջապես չափազանց մեծ է շաքարասնկերի նշանակությունը, որպես կերանյութ, տնտեսական տեսակետից։ Այսպես, հորթերին 1 կգ չոր կերային շաքարասնկեր տալու դեպքում, լրացուցիչ ստացվում է 0,9—1,1 կգ միս, իսկ հատիկային կամ այլ տեսակի կերով կերակրելիս՝ 1 կգ քաշաճ ստանալու համար ծախսվում է 7—9 կերի միավոր կամ մոտ 7—8 կգ խտացրած կեր։ Խոզերի կերաբաժնում 1 կգ չոր կերային շաքարասնկեր ավելացնելիս լրացուցիչ ստացվում է մինչև 0,8 կգ խոզի միս։ Այդպիսի քաշաճ ստանալու համար, սովորական կերով կերակրելու դեպքում, կպահանջվի մոտ 5 կերի միավոր՝ 5 կգ վարսակ կամ 4 կգ եգիպտացորենի չոր հատիկ։ Մատղաշ թռչունների բտման ժամանակ 1 կգ շաքարասնկեր ծախսելու դեպքում լրացուցիչ ստացվում է 2,24 կգ միս։ Սովորական հատիկային կամ կոմբինացված կերով կերակրելիս, նույնպիսի քաշաճ ստանալու համար կպահանջվի 7—8 կգ խտացրած կեր։ Ածան հավերը 1 կգ կերային շաքարասնկեր օգտագործելու դեպքում լրացուցիչ տալիս են 25—27 ձու, այնինչ սովորական խտացրած կեր օգտագործելիս այդքան ձու արտադրելու համար պահանջվում է մոտ 6,5—7 կգ խտացրած կեր։

Այս համեմատությունները ցայտուն կերպով ցույց են տալիս թե ինչպիսի ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն է ձեռք բերում կերային շաքարասնկերի արդյունաբերական արտադրության կազմակերպումը։

## ԿԵՐԱՅԻՆ ՇԱՔԱՐԱՍՆԿԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Ոչ սննդային բուսական հումքից կերային շաքարասնկերի ստացման տեխ-
նոլոգիական պրոցեսը Սովետական Միությունում բավականաչափ լավ մշակ-
ված է։ Ընդունված է նրանց արդյունաբերական արտադրության հետևյալ երկու
հիմնական ուղղությունները.

առաջինը—սուլֆիտային հիմքերի (ցելյուլոզային), նախահիդրոլիզատ-
ների, բարդայի (դարեչրի), անտառանյութերի և գյուղատնտեսության մնա-
ցուկների անմիջական վերամշակումը՝ շրջանցելով էթիլային սպիրտի արտա-
դրությունը.

Երկրորդը—պենտոզաներով հարուստ բուսական հումքի (տերևավոր փայ-
տանյութ, եգիպտացորենի ցողուններ, բամբակենու սերմի կեղև և ցողուն, ար-
քաղ, ծղոտ և ոչ սննդային հումքի մի շարք այլ տեսակներ) վերամշակումը
ֆուրֆուրոլի (արդյունաբերության տարբեր ճյուղերում օգտագործվող շատ ար-
ժեքավոր նյութ է)։

Միաժամանակ սուլֆիտա-սպիրտային գործարանների մեծ մասը վերա-
նախագծվում են շաքարասնկային պրոֆիլի. դրանցից միայն մի քանիսում, որ-
տեղ կպահպանվի սպիրտային պրոֆիլը, շաքարասնկերը կարտադրվեն բարդա-
յից։

Այսպիսով կերային շաքարասնկերի հիմնական քանակությունը ստացվե-
լու է մասնագիտացված հիդրոլիզա-շաքարասնկային և հիդրոլիզա-ֆուրֆուրո-
լա-շաքարասնկային գործարաններում։

Հարկ է նշել, որ կերային շաքարասնկերի արտադրության հումքային բա-
զան պրակտիկորեն անսահմանափակ է։ Միայն անտառային և փայտամշակ-
ման արդյունաբերության մնացուկները երկրում տարեկան կազմում են ավելի
քան 100 միլիոն խորանարդ մետր, իսկ յուրաքանչյուր միլիոն խորանարդ մետր
խիտ փայտանյութից ստացվում է 80—90 հազար տոննա կերային շաքարա-
սնկեր։ Դա նշանակում է, որ միայն անտառանյութի վերամշակման մնացորդ-
ներից տարեկան կարելի է արտադրել 8—9 միլիոն տոննա կերային շաքարա-
սնկեր։

Հաշվարկված է, որ միայն եգիպտացորենի հատիկ վերամշակող և հիբրի-
դային սերմերի գործարաններում կենտրոնացվող եգիպտացորենի ցողունների
քանակը 1965 թ. կազմելու է մոտ 1 միլիոն տոննա, բամբակենու ցողուններինը՝
մոտ 2,5 միլիոն տոննա, արքաղինը՝ ավելի քան 1 միլիոն տոննա, կտավհատի,
կանեփի և ջուտի ցողուններինը՝ մոտ 0,8 միլիոն տոննա, վայրի եղեգի տարե-
կան պաշարները՝ 25 միլիոն տոննա։

Երկրում տարեկան ցանվում է ավելի քան 100 միլիոն հեկտար հացահա-
տիկ. հեկտարից միայն երկու տոննա ծղոտի եղանակի հաշվով տարեկան կարելի
է ստանալ 200 միլիոն տոննա ծղոտ։ Եթե միայն դրա 25 տոկոսը օգտագործվի
որպես հումք կերային շաքարասնկեր արտադրելու համար, ապա այն կկազմի
50 միլիոն տոննա։ Այլ կերպ ասած միայն բուսական հումքի մնացորդների պա-
շարները (չհաշված փայտանյութը), տարեկան կազմում են մոտ 80 միլիոն
տոննա։ Գիտական ուսումնասիրությունները և արտադրական պրակտիկան
ճանաչել են, որ մեկ տոննա չոր բուսական հումքից ստացվում է մինչև
250 կգ չոր կերային շաքարասնկեր։ Հետևաբար յուրաքանչյուր տարի գոյացող



բուսական մնացորդներից կարելի է արտադրել մինչև 20 միլիոն տոննա կերա-
յին շաքարասնկեր, իսկ փայտանյութի մնացորդների հետ միասին՝ մինչև
28—29 միլիոն տոննա։ Չնայած հումքի այսպիսի խոշոր պաշարների առկայու-
թյանը, այնուամենայնիվ, կերային շաքարասնկերի արտադրությունը մեզ մոտ
խիստ ետ է մնում։ Այն ժամանակ, երբ երկրի անասնաբուծության տարեկան
ընդհանուր պահանջը կերային շաքարասնկերի նկատմամբ կազմում է մոտա-
վորապես մեկ միլիոն տոննա, 1960 թ. փաստորեն արտադրվել էր ընդամենը
16,7 հազար տոննա։ Պատահական չէր, որ ՍՍՌՄ Մինիստրների Սովետը
1960 թ. փետրվարին հատուկ որոշում ընդունեց խտացրած կերի արտադրու-
թյան հետագա ավելացման և սպիտակուցային կերի արտադրության զարգաց-
ման մասին։ Այդ որոշման համաձայն ոչ սննդային հումքից կերային շաքա-
րասնկերի արտադրությունը 1965 թ. պետք է հասցվի 500 հազար տոննայի,
յոթնամյա պլանով նախատեսված 186 հազար տոննայի փոխարեն։

Սակայն չի կարելի արդարացնել մեր պլանավորող օրգանների և արդյու-
նաբերության համապատասխան գերատեսչությունների անթույլատրելի անու-
շադրությունը և դանդաղկոտությունը արդյունաբերության այդ չափազանց
կարևոր ճյուղի զարգացման նկատմամբ։ Կերային շաքարասնկերի արտադրու-
թյունը ՍՍՌՄ-ում սկսվել է դեռ 1943 թվականից։ Անցել է ահա շուրջ քսան
տարի, բայց դրությունը մնում է անմխիթար՝ շաքարասնկերի արտադրության
ծավալը կազմում է պահանջի միայն 1,7 տոկոսը։ Բանը նրանումն է, որ հիդ-
րոլիզային շաքարասնկերի թողարկման պլանավորված ծրագիրը խիստ թերա-
կատարվում է, աններելի կերպով ձգձգվում են հիդրոլիզա-շաքարասնկային
գործարանների կառուցումը։

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՊԵՏՔ Է ՍՏԵՂԾԵԼ ՍՊԻՏԱԿՈՒՑԱ-ՎԻՏԱՄԻՆԱՅԻՆ ԿԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Անասնաբուծության և թռչնաբուծության պրակտիկան Հայաստանում ցույց
է տալիս, որ ներկայումս օգտագործվող կերի մեջ, հատկապես մսուրային
շրջանում, խիստ պակասում է սպիտակուցների և վիտամինների քանակը, որի
հետևանքով զգալիորեն ընկնում է անասնաբուծության մթերատվությունը։
Բացի այդ, սպիտակուցների և վիտամինների պակասը կերաբաժնում առաջաց-
նում է օգտագործվող բուսական կերի զգալի գերածախս։ Ահա թե ինչու մեզ
մոտ օգտագործվող կերերի որակի բարելավումը՝ նրանց հարստացումը սպի-
տակուցներով և վիտամիններով, պետք է դիտել որպես անասնաբուծության
մթերատվության բարձրացման կարևորագույն լծակներից մեկը։

Հայտնի է, որ կերի հիմնական բաղադրիչ մասերն են հանդիսանում ած-
խաջրերը, սպիտակուցները, ճարպերը և վիտամինները։ Ինչ վերաբերում է
անասնաբուծության և թռչնաբուծության պահանջի ապահովմանը ածխաջրատ-
ներով և ճարպերով, ապա դա լուծվում է դաշտային կերհայթայթման և խո-
տի ու սիլոսի քանակի ավելացման միջոցով։ Այդ ուղղությամբ մեր ռեսպուբլի-
կայում մեծ գործ է արվում։

Բայց բուսական կերի բազայի ընդլայնման ուղղությամբ ձեռք բերված
հաջողությունները դեռևս չեն լուծում անասնաբուծության պահանջը սպիտա-
կուցների և վիտամինների նկատմամբ։ Այդ կարևորագույն սննդանյութերը
ոչնչով չի կարելի փոխարինել, իսկ բուսական կերի մեջ դրանք քիչ քանակով

ձն պարունակվում: Սովորական բուսական կերի սննդարարությունը բարձրաց-
նելու համար, դրանց ավելացնում են սպիտակուցներով և վիտամիններով հա-
րուստ դեֆիցիտային կոնցենտրատներ՝ ձկան ալյուր, արյան և մսակերային
ալյուր, կաթնամթերքներ, քուսպեր, վիտամինային պրեպարատներ և այլն:
Բայց պահանջի համեմատությամբ այդ կոնցենտրատների արտադրությունը
այնքան աննշան է, որ դրանց հաշվին բոլորովին անհնար է լրացնել օգտա-
գործվող կերի սպիտակուցային և վիտամինային դեֆիցիտը: Մեր ռեսպուբլի-
կայի կոլտնտեսություններում և սովխոզներում կերի սպիտակուցների պակասը
ներկայումս կազմում է մոտ 90 հազար տոննա, կամ պահանջվող քանակի
30—35 տոկոսը: Այդ պակասի լրացման ամենաարագ և տնտեսական տեսակե-
տից առավել շահավետ ուղին սպիտակուցային բիոսինթեզի արդյունաբերու-
թյան ստեղծումն է, այլ կերպ ասած՝ ոչ սննդային հումքից կերային շաքարա-
սնկերի արդյունաբերական արտադրության կազմակերպումը: Այս պրոբլեմը
մեր կողմից առաջ է քաշվել դեռևս 1938 թ. կատարած էքսպերիմենտալ հետա-
զոտությունների արդյունքների հիման վրա:

Մեր ռեսպուբլիկայի պայմաններում, որտեղ վարելահողերի տարածու-
թյունները խիստ սահմանափակ են (մեկ բնակչին ընկնում է մոտ 0,25 հեկ-
տար վարելահող և այն էլ մեծ մասամբ անջրդի), սպիտակուցային կերի ար-
դյունաբերական արտադրությունը բացառիկ ակտուալ նշանակություն է ձեռք
բերում: Ինչպես Միության գրեթե բոլոր մարզերում, երկրամասերում և ռես-
պուբլիկաներում, այնպես էլ մեզ մոտ կան ոչ սննդային հումքի խոշոր պաշար-
ներ (արքադ, փայտի սղոցուք, ոչ պիտանի անտառանյութ, ծղոտ, խաղողի վե-
րամշակման մնացորդներ և այլն): Դեռևս 1949—1950 թվականներին հիմնա-
վորվեց Երևանում 10 հազար տոննա կարողությամբ շաքարասնկային գործա-
րանի կառուցման անհրաժեշտությունը և նպատակահարմարությունը: Լենին-
գրադի «Գիպրոգիդրոլիզը» կազմեց համապատասխան տեխնիկական նախագիծ:
Գործարանի կառուցման տնտեսական հիմնավորման հաշվարկումները ցույց
տվին այդ ձեռնարկության բարձր շահավետությունը. արտադրանքի ինքնարժե-
քը կազմում էր մեկ տոննային 170 ռուբլի, 350-ի (գների հին մասշտաբով) թո-
ղարկման գնի դիմաց: Գործարանի կառուցումը հաստատվեց Միութենական
կառավարության կողմից 1951 թ. և անգամ սկսվեց նրա շինարարության ֆի-
նանսավորումը: Բայց հետագայում, դժբախտաբար, անհիմն պատճառներով
այդ կարևոր ձեռնարկության կառուցումը անուշադրության մատնվեց և կոնսեր-
վացվեց, իսկ նրան հատկացված շինարարական հրապարակը (Երևանի խտաց-
րած կերի գործարանին կից) ցանկապատված վիճակով օգտագործվեց այլ
նպատակների համար:
նպատակների համար:

Իսկ ի՞նչ է նշանակում Հայաստանի անասնաբուծության զարգացման հա-
մար տարեկան 10 հազար տոննա կերային չոր շաքարասնկեր արտադրել: Դա
նշանակում է՝ արտադրել մոտ 22 հազար տոննա թռչունի կամ 10 հազար տոն-
նա տավարի միս: Այդպիսի քանակությամբ շաքարասնկեր օգտագործելու շնոր-
հիվ կթվող կովերի տարեկան կաթնատվությունը կաճի 60 միլիոն լիտրով, ա-
ծան հավերից լրացուցիչ կերպով կստացվի 270 միլիոն ձու: Տասը հազար տոն-
նա շաքարասնկերի օգտագործումը իր սննդարար էֆեկտով հավասար է 91 հա-
զար տոննա հատիկային կերի, այսինքն՝ ներկայումս ռեսպուբլիկայում ստաց-
վող բոլոր հացահատիկային կուլտուրաների բերքի մոտ 30—35 տոկոսին:

Հաշվարկված է, որ 10 հազար տոննա կարողությամբ շաքարասնկային



գործարանի կառուցման կապիտալ ներդրումները կփոխհատուցվեն 2,8 տա-
րում, իսկ արտադրանքի իրացումից տարեկան կստացվի 8,4 միլիոն ռուբլու
եկամուտ:

Մեր ռեսպուբլիկայում կերի արդյունաբերական արտադրության կազմա-
կերպման անհրաժեշտության հարցը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1961 թ.
Հունվարյան պլենումում տրված իր զեկուցման մեջ ամենայն սրությամբ
առաջ քաշեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Ն. Զարոբյանը: Նա
նշեց, որ «Մեր ռեսպուբլիկայի պայմաններում անասնաբուծության կարիքնե-
րը խտացրած և սպիտակուցա-վիտամինային կերով ապահովելու հարցերը
հիմնականում կարող են լուծվել միայն արդյունաբերական արտադրության ճա-
նապարհով: Անհրաժեշտ է ոչ սննդային հումքի բազայի վրա (արքադ, ծղոտ,
սղոցուք և այլ հումք) առաջիկա երկու տարվա ընթացքում կազմակերպել կե-
րային շաքարասնկերի արտադրությունը, որի համար ռեսպուբլիկայում կառու-
ցել հիդրոլիզա-շաքարասնկային գործարան՝ տարեկան ոչ պակաս 12 հազար
տոննա կարողությամբ: Պետք է ասել, որ այդ գործարանի կառուցումը սկսվել
էր Հայաստանում Միութենական կառավարության որոշմամբ դեռ 1951 թվա-
կանին, սակայն հետագայում այդ շինարարությունը միանգամայն անհիմն
կերպով կոնսերվացվեց»:

Հայաստանի կառավարությունը 1960—1961 թթ. նորից բարձրացրեց շա-
քարասնկային գործարանի կառուցումը վերսկսելու հարցը, սակայն նախագծա-
յին փաստաթղթերի ոչ լրիվ պատրաստ լինելու և պլանավորող օրգանների ան-
բավարար հետևողականության և պահանջկոտության պատճառով, գործարանի
ֆինանսավորումը նորից ու նորից հանվեց պլաններից: 1963 թ. կապիտալ շի-
նարարության պլանների նախագծում նախատեսված է սկսել գործարանի
միայն մեկ սեկցիայի կառուցումը՝ 3000 տոննա կարողությամբ: Բայց պետք է
ասել, որ մինչև օրս էլ Հայաստանի ժողտնտխորհը, որին հանձնարարված է
գործարանի նախագծի կազմումը և շինարարությունը, այդ առաջադրանքի կա-
տարումը չի ապահովել և նորից ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգաց-
ման համար կարևորագույն այդ ձեռնարկության շինարարության հաստատումը
և ֆինանսավորումը լուրջ վտանգի տակ է: Հայաստանի Պետպլանի և ժողովըր-
դական տնտեսության ղեկավարությունը պետք է արտահերթ միջոցներ ձեռք
առնի, որպեսզի ինչ գնով էլ որ լինի եկող տարվանից սկսվի Երևանի հիդրոլի-
զա-շաքարասնկերի գործարանի կառուցումը:

Նպատակահարմար է միաժամանակ ձեռնարկել փոքր կարողությամբ շա-
քարասնկային գործարանների (100—300, 1000 տոննա) նախագծման և կա-
ռուցման աշխատանքները, որը հնարավորություն կտա այդ ձեռնարկություն-
ները մաքսիմալ չափով մոտեցնել ապակենտրոնացված հումքի բազաներին և
տեղադրել տերիտորիալ արտադրական վարչությունների սահմաններում: Այդ-
պիսի փոքր կարողությամբ գործարանների տիպային նախագծեր գոյություն
ունեն, անհրաժեշտ է միայն նրանց հարմարեցնել կոնկրետ վայրի պայման-
ներին:

Պետք է նկատի ունենալ, որ մեր ռեսպուբլիկայում եղած հումքային ռե-
սուրսները հնարավորություն են տալիս կերային շաքարասնկերի արտադրու-
թյան ծավալը առաջիկա 10—15 տարում հասցնել տարեկան մինչև 50—60 հա-
զար տոննայի, իսկ դա նշանակում է կրկնապատկել-եռապատկել անասնաբու-
ծական մթերքների արտադրության ծավալը:

---

# ԿԵՐԻ ՀԱՐՈՒՍՏ ԱՂԲՅՈՒՐ

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Գյուղատնտես

Շաքարի գործարանային հումք, կերի և պարենային արմատապտուղներ ստանալու նպատակով ճակնդեղի ու գազարի ցանքերը կատարում են գարնանը և բերքը հավաքում նույն տարվա աշնանը։ Կերի համար օգտագործվում են միայն այդ բույսերի արմատապտուղները և մասամբ ճակնդեղի տերևները։ Այլ կերպ ասած, ճակնդեղը և գազարը հիմնականում ճանաչվում են որպես հյութալի արմատապտուղ տվող բույսեր։

Տարբեր ժամկետներում և ագրոտեխնիկական տարբեր պայմաններում մշակվելիս, այդ կուլտուրաները հանդես են բերում աճի ու զարգացման այնպիսի առանձնահատկություններ, որոնք մինչև այժմ քիչ են ուսումնասիրվել ու գնահատվել։ Մինչդեռ այդ առանձնահատկությունները մեր պայմաններում հնարավորություն են ընձեռում գազարի ու ճակնդեղի բույսերը մշակել նաև վերերկրյա առատ կանաչ զանգված ստանալու և դրանից լավորակ ու ցածր ինքնարժեքով սիլոս պատրաստելու համար։

Ներկայումս շաքարի ճակնդեղի ու գազարի սերմ ստանալու համար գարնանը տնկում են մայրացու արմատապտուղներ։ Այս մեթոդով սերմնաբուծությունը տևում է երկու տարի։ Արարատյան դաշտավայրում 3—4 տարի է, ինչ այդ բույսերի սերմերը ստանում ենք ոչ թե մեկ լրիվ վեգետացիա ապրած-հասունացած արմատապտուղները տնկելով, այլ աշնանից աճեցրած և ձմռանը հողում թողնված արմատներից։ Փորձերը ցույց տվին, որ այս բույսերը աշնան և գարնան շրջանում, անցնելով զարգացման յարովիզացիայի ստադիան, ոչ միայն ընդունակ են դառնում սերմացողուններ տալ, այլև խնամքի լավ պայմաններում, վաղ գարնանը հանդես են բերում աճի ու զարգացման արտակարգ տեմպ։ Մինչև մայիսի վերջը գազարի սերմնաբույսերը հասնում են 128—150 և շաքարի ճակնդեղինը՝ 140—180 սանտիմետրի, իսկ սերմերը հասունանում են հուլիս ամսին։

Ուժեղ երաշտի հետևանքով ռեսպուբլիկայում 1960—1961 թթ. ձմռանը կերի սուր պակասը առիթ հանդիսացավ աշնանից աճեցված շաքարի ճակնդեղի և գազարի սերմակալման գնացող բույսերը առաջարկել որպես կեր։

Հաշվումները ցույց տվեցին, որ սերմի համար օգոստոսին ցանված գազարի և շաքարի ճակնդեղի լայնաշարք ցանքերի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվում է մոտ 350—400 ցենտներ կանաչ մասսա, իսկ խիտ ցանքի դեպքում՝ դրանից էլ ավելի։ Այսպես, Երկրագործության գիտահետազոտական



ինստիտուտի էջմիածնի բազայում 1960 թ. սեպտեմբերին ցանած գազարի խիտ ցանքերի կանաչ զանգվածի բերքը, բույսերի ծաղկման փուլում, հեկտարի հաշվով, կազմեց 510 ցենտներ։ 1961 թ. օգոստոսի 25-ին հեռաշար ցանված շաքարի ճակնդեղի սերմնաբույսերի վերերկրյա մասի քաշը (սերմակալման փուլում) մեկ հեկտարից կազմեց 780 ցենտներ, նույն ժամկետներին ցանված գազարի նոսր ցանքի մեկ հեկտարի բերքատվությունը՝ 530 ցենտներ, խիտ ցանքի բերքը՝ 659 ցենտներ։

1962 թվականի սեպտեմբերի վերջերին Արտաշատի շրջանի Ծաղկաշեն գյուղի կոլտնտեսությունում ցանված շաքարի ճակնդեղի և վայրի գազարի արտադրական ցանքերում, սերմակալման-ծաղկման փուլում, բույսերի բարձրությունը հասավ 150—160 սանտիմետրի։ Մասնակի չափումների հիման վրա արձանագրվեց, որ շաքարի ճակնդեղի կանաչ զանգվածը մեկ հեկտարից կազմում է 666 ցենտներ և բարձրից կտրված արմատները՝ 153 ցենտներ, գազարի կանաչ զանգվածը՝ 746, արմատները՝ 100 ցենտներ։ Կերի միավորի վերածած ճակնդեղի վերերկրյա զանգվածից ստացվում է մոտ 13200 կգ, գազարի զանգվածից՝ 15000 կգ կերի միավոր, որպիսին համապատասխանաբար հավասար է 520, 600 ցենտներ շաքարի ճակնդեղի։

Վերև բերված տվյալներով ապացուցվում է, որ շաքարի ճակնդեղի ու գազարի ամռա-աշնանային թե լայնաշար և թե խիտ ցանքերից կարելի է ստանալ կանաչ զանգվածի բարձր բերք, ըստ որում վաղ ցանքերի դեպքում բերքն ավելի բարձր է ստացվում, քան ուշ ցանքերում։ Լայնաշար ցանքերում բույսերը լինում են մեծ ու կոպիտ, նեղաշար ցանքերում՝ համեմատաբար նուրբ և հյութալի։

Միաժամանակ պարզվեց, որ աշնանացան ճակնդեղի ու գազարի բույսերը մեր պայմաններում (առանց մեծ արմատներ կազմակերպելու) սնման փոքր մակերեսի վրա, հողի խորությունը օգտագործելով, կարող են վերերկրյա մասերի (տերև, ցողուն) փարթամ աճ և առատ սերմ տալ։

Արարատյան դաշտավայրում գազարի ու ճակնդեղի աշնանային ցանքերից ստացված բույսերը, իբրև կանաչ կեր կամ սիլոսանյութ, մի շարք առավելություններ ունեն։

Ցանքը կատարվում է սեպտեմբեր ամսին, աշնանացան ու գարնանացան մի շարք կուլտուրաներից ազատված հողերի վրա։ Այդ շրջանում ջրի պակաս չի զգացվում։ Աշնանացան այս բույսերը կերի համար պիտանի են դառնում վաղ գարնանը, ապրիլ-մայիս ամիսներին, երբ շատ տնտեսություններում կերի պաշարները հիմնականում սպառված են լինում։ Դրանց բերքահավաքից հետո, մայիսի վերջին, այդ հողամասերը կարող են դրվել եգիպտացորենի, ճակնդեղի, բանջար-բոստանային և մի շարք այլ գարնանացան կուլտուրաների ցանքի տակ։ Այսպիսով, հնարավոր է դառնում նույն հողից մեկ տարում (սեպտեմբերից-սեպտեմբեր) երկու բերք ստանալ։ Աշնանացան այս կերաբույսերից հետո գարնանացան կերաբույս ցանելով, կրկնապատկվում է կերի պաշարը, հնարավոր է դառնում մեկ տարում մեկ հեկտարից 20-25 հազար կգ միավոր կեր ստանալ։

Խնամքով նախապատրաստած հողի վրա աշնանացան գազարի ու ճակնդեղի բույսերը խիտ լինելու դեպքում մոլախոտերը քիչ են երևում և չեն կարող զգալի վնաս պատճառել։ Նրանցից շատերը աշնան և ձմռան ընթացքում մեռնում են, իսկ գարնանը գազարի ու ճակնդեղի բույսերը իրենց արագ աճեցողու-

թյամբ ճնշում են գարնանային մոլախոտերին, այս պատճառով էլ կարիք չի զգացվում 2—3 քաղհան, փխրեցում ու կուլտիվացիա կատարել:

Այս կերաբույսերի առկայության շնորհիվ, դեռ գարնանը սիլոսանյութի հիմնական մասսա ունենալով, հնարավոր է դառնում սիլոսացման աշխատանքները ավելի շուտ սկսել, ավելի շատ և էժան կեր կուտակել: Բացի այդ, հնարավոր է դառնում գարնանից պատրաստել խառն կոմբինացված սիլոս՝ գազարի, ճակնդեղի կանաչ զանգվածի հետ սիլոսացման նպատակով օգտագործել աշնանացան կանաչ ոլոռնի, շաբդարի և նախորդ տարիների առվույտի դաշտերի առաջին հարի բերքը, ունենալ սպիտակուցներով, վիտամիններով ու ածխաջրերով հարուստ սիլոս, որով հնարավոր է անասուններին կերակրել ո՛չ միայն ձմռան ընթացքում, այլև տարվա բոլոր ամիսներին:

Գազարի և շաքարի ճակնդեղի աշնանային ցանքերը վաղ գարնանը կտան վիտամիններով հարուստ կանաչ կեր, որի կարիքը մեծ չափերով զգացվում է հատկապես մատղաշների համար: Ապացուցված է, որ գազարի բույսերը երկու անգամ ավելի վիտամին են պարունակում, քան ներկայումս արտադրության մեջ սիլոսացման համար մշակվող կերի շատ կուլտուրաներ: Բացի այդ գազարի կանաչ բույսերը լավագույն հումք են խոտալյուր պատրաստելու համար:

Շաքարի ճակնդեղի և գազարի երիտասարդ բույսերը ցրտադիմացկուն են: Արարատյան հարթավայրում չեն ցրտահարվում: Ձմռանը, եթե նրանք ունեն արմատների համապատասխան մեծություն (նայած ձնածածկի շերտին և սառնամանիքների աստիճանին), բարձրանում է նրանց ցրտադիմացկունությունը: Հաշվի առնելով նրանց բիոլոգիական այս առանձնահատկությունը, համապատասխան ագրոտեխնիկական միջոցառումների կիրառման դեպքում, վստահորեն կարող ենք ասել, որ միանգամայն հնարավոր է ռեսպուբլիկայի գյուղատնտեսական բոլոր գոտիներում, ջրովի հողերում, մշակել շաքարի ճակնդեղը և գազարը որպես կերաբույսեր:

Բայց հարկ կա նշել, որ ռեսպուբլիկայի շատ շրջաններում գազարի և ճակնդեղի մշակությունը կերի համար նույնանման տնտեսական շահավետություն ունենալ չի կարող: Նայած բնակլիմայական պայմաններին, նրանք մեկ տեղ կարող են լինել գարնանացան բույսերի լավ նախորդներ՝ մեկ տարում նույն հողից երկու բերք ստանալու համար, մեկ ուրիշ տեղ հնարավոր կլինի մեկ տարում մեկ բերք աճեցնել, զբաղեցնել ցելահողերը կամ այլ առանձին հողամասեր:

Շաքարի ճակնդեղի և գազարի սերմնատվության գնացող բույսերի՝ կերի համար աճեցնելն ու օգտագործելը նոր, արդյունավետ միջոցառում է: Նկատի ունենալով նրա կարևորությունը, անհրաժեշտ է ուժեղացնել այդ ուղղությամբ տարվելիք փորձահետազոտական աշխատանքները ռեսպուբլիկայի գյուղատնտեսական տարբեր գոտիներում, մշակել ու կիրառել ագրոտեխնիկական համապատասխան միջոցառումներ: Անհրաժեշտ է այս աշնանից կազմակերպել ճակնդեղի ու գազարի սերմաբուծական ցանքեր, առաջիկա 1—2 տարում պահանջված քանակի, ցածր ինքնարժեքով սերմեր արտադրելու համար:

Կերի կայուն բազա ստեղծելը անչափ կարևոր գործ է, որին պետք է ծառայեցվեն բոլոր ուժերն ու միջոցները: Հաջողության առաջին նախապայմանը այդ գործի կազմակերպական ճիշտ դրվածքն է, պլանավորված հարատև աշխատանքը, որը պետք է ծավալել այժմվանից:

---

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՈՒՄ

## ԿԱՆԱԴԱՅԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆ ԵՎ ԵՐԿՐԻ ԱԶԳԱՅԻՆ ՇԱՀԵՐԸ*

*ԼԵՍԼԻ ՄՈՐՐԻՍ*

*Կանադայի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գլխավոր քարտուղար*

Լրացավ Կանադայի Կոմունիստական պարտիայի քառասուն տարին: Լավ հայտնի է այն ավանդը, որ Կոմպարտիան այդ ժամանակաշրջանում մտցրել է երկրի բանվոր դասակարգի ազատագրական պայքարում և դեմոկրատիայի զարգացման գործում: Այդ ժամանակամիջոցում պարտիան երկու անգամ ենթարկվել է ռեպրեսիաների, հայտարարվել է օրենքից դուրս, իսկ շատ կոմունիստներ անցյալում բազմիցս նստել են բանտերում և համակենտրոնացման ճամբարներում:

«Սառը պատերազմի» դժվարին պայմաններում, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Կանադայում ստեղծված առանձնահատուկ տնտեսական իրադրության մեջ կոմունիստները կոփում էին իրենց շարքերի միասնությունը և այսօր հանդես են գալիս որպես ազգի շահերի ամենահետևողական պաշտպաններ:

### ՊԱՇՏՊԱՆԵ՛Լ ԱՆԿԱԽՈՒԹՅՈՒՆԸ: Ո՞Վ Է ԳԼԽԱՎՈՐ ԹՇՆԱՄԻՆ

Քառասնական թվականների վերջերից մղված դիսկուսիաների ընթացքում կոմպարտիան ավելի ճշտորեն որոշեց իր դիրքերը Կանադայի զարգացման հեռանկարների վերաբերմամբ, մի բան, որն իր արտացոլումը գտավ պարտիայի ծրագրում: Եթե մինչև այդ սոցիալիզմի ուղին պատկերվում էր որոշ չափով ընդհանուր և վերացական ձևով, ապա 1952 թ. ծրագրի նախագծում պարտիան Կանադայի արդի պրոբլեմների կենտրոնում դրեց երկրի անկախության համար մղվող պայքարի դեմոկրատական և ազգային պրոբլեմը: Դա պայմանավորվում էր երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Կանադայի, Անգլիայի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների մեջ տեղի ունեցած փոփոխություններով, երբ ամերիկյան կապիտալը, որն արդեն 1919 թ. Կանադայի էկոնոմիկայում իր ծավալով սկսեց գերազանցել անգլիական կապիտալին, միաձուլվեց կանադական մոնոպոլիստական կապիտալի հետ, որի հետևանքով ստեղծվեց երկրի էկոնոմիկայում գերիշխող մի նոր խմբավորում: Կանադան ավելի ու ավելի է վերածվում ԱՄՆ-ի համար հումքի աղբյուրի և դառնում այնտեղ արտադրվող արդյունաբերական ապրանքների ներմուծողը: Դրա հետևանքով ժողովրդի կենսամակարդակն այստեղ ավելի ցածր է, քան ԱՄՆ-ում: Պարտիայի 1952 թվականի Ծրագրի նախագիծը պարզ պատկերացում տվեց օտարերկրյա տերության՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների կողմից Կանադային տնտեսապես ճնշելու մասին. այնտեղ ասվում էր նաև, որ երկրի արտաքին և ռազմական քաղաքականությունն ավելի ու ավելի է ընկնում ԱՄՆ-ի վերահսկողության տակ: Հաշվի առնելով երկրի առանձնահատուկ պայմանները, կանադական կոմունիստները մշակեցին Կանադայում սոցիալիզմի ուղու իրենց կոնցեպցիան, մի ուղի, որ անխզելիորեն կապված է երկրի անկախության համար մղվող պայքարի հետ:

Բայց ճիշտ տակտիկա մշակելու գործը բարդանում էր նրանով, որ Կանադան փաստորեն ո՛չ թե գաղութ է, այլ իմպերիալիստական երկիր (թեպետև երկրորդական կարգի): Այդ կապակցությամբ հարց էր ծագում՝ ի՞նչ ազդեցություն կգործի անկախության համար մղվող պայքարի ծրագիրը Կանադայի մոնոպոլիստական բուրժուազիայի դեմ մղվող պայքարի վրա, բուրժուազիա, որի ձեռքում է գտնվում պետական իշխանությունը: ԱՄՆ-ի տիրապետության դեմ մղվող պայքարն արդյոք չի՞ թուլացնի Կանադայի բուրժուազիայի դեմ մղվող պայքարը: Եվ ընդհակառակը, եթե որպես թշնամի տեսնենք միայն Կանադայի բուրժուազիային, ապա ԱՄՆ-ի տիրապետության դեմ մղվող պայքարը թուլացնելու տենդենց երևան չի՞ գա:

* Արտատպում ենք որոշ համառոտումով.—Խմբ.:

## ԸՆԴԴԵՄ ՀԻՆ ԲԱՐՔԵՐԻ

# ԱՅՍՊԵՍ ԿՈՉՎԱԾ ԱԶԳԱՅԻՆ ՄԻ ՔԱՆԻ ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

«Ազգային սովորույթ» դարձվածքը լսելիս մարդ ակամայից մտաբերում է
դարերի ընթացքում ժողովրդի մեջ արմատացած բազմաթիվ վեհ ու ազնիվ
ձգտումներ ու սովորություններ՝ աշխատասիրություն, նպատակին հասնելու
համառություն, խելացի համբերատարություն, հարգանք մեծերի նկատմամբ,
բարություն, հյուրասիրություն և հատկապես կենցաղի զանազան ծեսերի կա-
տարման չգրված բազում կանոններ։ Յուրաքանչյուր ազգ կամ ազգություն ունի
սովորույթների մի որոշակի խումբ, բնավորության ինչ-որ գծեր, որոնք այս
կամ այն չափով հատուկ լինելով մյուս ազգերին էլ, առանձնապես յուրովի են
արտահայտվում տվյալ ազգի ներկայացուցիչների մոտ։ Հասկանալի է, որ այդ
սովորույթները քարացած չեն, որ կենսական պայմանների փոփոխության, ազ-
գերի փոխադարձ հարաբերությունների սերտացման հետ միասին դրանք և։
վերափոխվում ու միասնականանում են՝ մեկ ազգից անցնելով մյուսներին։

Մեր երկրում, որտեղ սոցիալիզմի կառուցման հետևանքով հիմնովին փոխ-
վել է ազգերի ու ազգությունների տնտեսական-սոցիալական կյանքի բովանդա-
կությունն ու հոգևոր կերպարը, ուր ազգերը վերափոխվել են սոցիալիստական
ազգերի, տեղի է ունենում նրանց կենցաղի, սովորույթների ու ձգտումների
միասնականացման պրոցես։ Սակայն այդ ամենևին էլ չի նշանակում, որ մի-
անգամից վերանում են բոլոր ազգային սովորույթները, կամ թե բոլոր ազգերն
ընդունում ու յուրացնում են միայն մի որևէ ազգի սովորույթները։ Ըստ էության
դա բավականին երկարատև մի պրոցես է, որի ընթացքում տարբեր ազգերի ու
ազգությունների՝ դարերի ընթացքում մշակված ձգտումներից ու սովորույթնե-
րից ստեղծվում են նոր, համաձույլ սովորույթներ, ձգտումներ, բարոյական ու
սոցիալական հասկացություններ, որոնք իրենց մեջ ամփոփում են այն բոլոր
դրականը, ինչ մարդկությունը մշակել է իր կյանքի բազմադարյան ճանապար-
հին։

Սխալ չէր լինի նաև նոր սովորույթների կազմավորումը դիտել որպես մի
ինչ-որ հեշտ ու հանգիստ ինքնաընթաց պրոցես, որը կատարվում է առանց
հակասությունների, չպահանջելով դրանց գիտակցական կարգավորում։ Իրա-
կանում դա բավական դժվարին ու բարդ պայքարի պրոցես է, մարդկանց հա-
սարակական գիտակցության ձևավորման անխզելի մի այնպիսի բնագավառ,
ուր տեղի է ունենում հնի ու նորի, մահացողի ու կենսունակի անհաշտ պայքար։

Բանն այն է, որ մինչսոցիալիստական հասարակարգերում աշխատավոր
մարդկանց բազմադարյան կյանքով ստեղծված մի շարք ձգտումների ու սովո-
րույթների հետ միասին, որոնց զգալի մասը մեզ համար հարազատ է և ընդու-



նելի, արմատացել են նաև շահագործողական դասակարգերի կյանքն ու
սկզբունքներն արտահայտող ձգտումներ ու սովորույթներ (կաշառակերություն,
ստորաքարշություն, հաճոյակատարություն, ցոփություն, ժլատություն և այլն),
որոնք միանգամայն խորթ են սոցիալիստական հասարակարգին։ Սոցիալիզմի
կառուցման շնորհիվ այդ սովորույթները հիմնականում հաղթահարվել են, սա-
կայն նրանց մնացուկներն այս կամ այն ձևով դեռևս մնում են մեր կյանքում։

Այդ մնացուկները, զանազան ձևերով արտահայտվելով մեր մարդկանց
գիտակցության ու պրակտիկայի մեջ, համառությամբ դիմադրում են նորին։
Դրա հետ միասին մեր կյանքում, մասնավորապես կենցաղում, այդ հաղթա-
հարված սկզբունքների ու սովորույթների մնացուկները սքողվում են ազգա-
յին սովորույթի տեսքով ու, եթե նրանց դեմ գործուն և անհաշտ պայքար չի
մղվում, զգալի տարածում են գտնում, խանգարելով մեր կյանքի առաջըն-
թացին։ Անդրադառնանք հենց այս կարգի սովորույթներին։

***

Նման երևույթներ տեսնելու համար հեռու գնալու կարիք չկա։ Մեր շրջա-
պատը, մեր կենցաղը, մի փոքր ուշադիր դիտելու դեպքում, անմիջապես կարող
ենք նկատել բազմաթիվ նման սովորույթներ ու սովորություններ։

Հարսանիք է։ Ի մի հավաքված բարեկամներն ուրախանում են, երջանիկ
կյանք բարեմաղթելով միավորված երիտասարդ զույգին։ Թնդում են կենացնե-
րը։ Եվ ահա... հնչում է «շաբա՜շ, ո՛վ ունի»... Ու թղթադրամներ են թափվում
նվագողների առաջ։ Տոգած փորով ու սրած բեղերով մեկը նետում է տասը
ռուբլի։ Մյուսները վարանումով խուզարկում են իրենց գրպանները և «ամոթով»
չմնալու համար, նույնպես գոչում «շաբա՜շ» ու նվագողներին նետում տարբեր
թղթադրամները։

Հարսանիքից հետո նվագողները հավաքում են զանազան գույնի ու չափի
թղթադրամները, յուղոտ և քրտնած մատներով հաշվելով ու դարսելով, գր-
պանները դնում «շաբաշից» հավաքված մի քանի հարյուր ռուբլին ու խիստ գոհ
հեռանում հարսանքատնից։ Իսկ հարսանքատերերը... Այդպիսի «առատաձեռ-
նությունից» հետո նրանք հաճախ նստում են ու մտածում, թե ինչպես վճարեն
իրենց պարտքերը կամ, նույնիսկ, որտեղից դրամ ճարեն հանապազօրյա հաց-
սերի համար։

Մեծամասնությունը շատ լավ է հասկանում «շաբաշի» անիմաստությունը,
շատ շատերն են զայրանում այդ սովորության դեմ, բայց հաճախ, ենթարկվե-
լով «ամոթի» կեղծ զգացմանը, լռում են ու մասնակցում դրան։ Իսկ եթե նրան-
ցից որևէ մեկը փորձում է համոզել մյուսներին, որ իմաստ չունի նվագողներին
հարյուրավոր ռուբլիներ տալ, երբ նրանց գործը սոսկ տասնյակներ արժե, որ
կարելի է այդ դրամը նպատակահարմար ծախսել ընտանիքի կարիքների հա-
մար, միշտ էլ գտնվում է մեկը, որը հակաճառում է, ասելով. «Դա մեր ազգա-
յին սովորությունն է։ Ի՞նչ է մի քանի ռուբլին, որ ափսոսում եք»։ Եվ խոսողը
լռում է, որովհետև չի ցանկանում դեմ գնալ «ազգային սովորությանը», այն
կարգին, որն իբր թե իր հայրերն ու պապերն են մշակել։

Սակայն բոլորովին իզուր են նրանք խաբվում «ազգային սովորություն»
կամ «հնոց կարգ» բառերից։ Հարցրեք ծերերին, քրքրեք մեր նախնիների սո-
վորույթներն ու բարքերը նկարագրող գրքերը, թերթեք մասնավորապես վաս-

տակավոր գիտնական Երվանդ Լալայանի ջանքերով հրատարակված «Ազգա-
գրական հանդես»-ի ստվարածավալ հատորները, ու ոչ մի տեղ դուք չեք հան-
դիպի նման «ազգային սովորության»։ Եվ դա ինքնըստինքյան հասկանալի է.
ինչպե՞ս կարող էին մեր պապերը՝ աշխատավոր գյուղացիներն ու բանվորները
որդեգրել մի այնպիսի սովորություն, որով ըստ էության դեն էր նետվում, կամ
ժողովրդական խոսքով ասած՝ «ջուրն էր գցվում» նրանց արդար վաստակը։
Նման սովորություն կարող էր ունենալ կալվածատերը, վաճառականը, գործա-
րանատերը, մի խոսքով՝ անաշխատ եկամուտով ապրող մարդը։ Իսկ նման
մարդկանց, շահագործող դասակարգի սովորույթները ազգային դառնալ չէին
կարող, որովհետև դրանք հասարակության, թեև հարուստ ու իշխող, բայց և
այնպես չնչին փոքրամասնությունն էին կազմում։ Իսկական ազգային սովո-
րույթները դրանք աշխատավորների շրջանում ծագած ու նրանց մոտ ամրա-
պնդված սովորույթներն են՝ ազնվությունը, հյուրասիրությունը, ընկերասիրու-
թյունը, հարգանքը մեծերի հանդեպ և այլն, և այլն։ Իսկ հնից մնացած «շաբա-
շի» հուշը իրականության մեջ բոլորովին այլ բան է նշանակել, այլ բովանդա-
կություն ու նպատակ է ունեցել։ Անցյալում հարսանիքի ժամանակ «շաբաշ»
տվել են միայն հարսի պարելու ժամանակ և դա փաստորեն եղել է նորապսակ-
ների հետագա կյանքով անհանգստացող հարազատների ու մտերիմների նվի-
րատվությունը նոր ստեղծված ընտանիքին. և ոչ մի կապ չի ունեցել նվագող-
ներին, ինչ-որ «արտակարգ», «հավելյալ» հոնորար վճարելու այսօրվա սովո-
րույթի հետ։

Սակայն, դժբախտաբար, «շաբաշի» սովորությունը միակը չէ, որը թաքնը-
վելով «ազգային սովորույթի» քողի տակ, տեղ է գտնում մեր կյանքում։

Մարդիկ կան, և, ցավոք սրտի, թվով ոչ քիչ, որոնք տրանսպորտի տոմս
վերցնելու, ավտոմեքենաների վարորդներին, սափրիչներին, մատուցողներին
վճարելու, խանութներում գնումներ կատարելու, աշխատավարձ ստանալու ժա-
մանակ չեն վերցնում դրամի մանրը, հաճախ էլ գիտակցաբար ավել դրամ են
վճարում։ Ճիշտ չէր լինի ասել թե դրանք սոսկ անաշխատ եկամուտ ունեցող,
մեր հասարակության մեջ այժմ շատ փոքրաթիվ մարդիկ են անում, թեև, ան-
տարակույս, երևույթի տոն տվողներն ու արմատացնողները նման տարրերն
են։ Սակայն «ազգային սովորույթ» հռչակվելով ոմանց կողմից, հիմնավորվե-
լով այն պատճառաբանությամբ, թե իբր «մենք, կովկասցիներս ժլատ, մանրա-
խնդիր չենք, մենք ուրիշների նման կոպեկները չենք հաշվում», այդ սովորու-
թյունը լայն տարածում է գտել։

Սա բոլորովին կեղծ պատճառաբանություն է, որը, դժբախտաբար, ազդում
է նույնիսկ շատ երիտասարդների վրա, որոնք, բնականորեն, չեն ցանկանում
ուրիշների աչքերում մանրախնդիր, ժլատ, դրամասեր երևալ և, օրինակ, աշ-
խատավարձ ստանալիս չեն պահանջում մանր դրամը, որպեսզի ոչ ոք նրանց
չասի թե կոպեկների համար դողում են։

Իսկ կոպեկների համար հարկավոր է «դողալ», իհարկե, «դողալ» լավ ի-
մաստով, այսինքն՝ ձգտել անիմաստ, անտեղի, աննպատակ չվատնել արդար
քրտինքով վաստակած կոպեկները։ Այս երևույթն էլ, նախորդի նման, իր հիմ-
քը չունի աշխատավոր ժողովրդի ոչ անցյալում և ոչ էլ ներկայում։ Դրամը
շռայլելը, աննպատակ ծախսելը անցյալում ճորտատերերի ու հղփացած վաճա-
ռականների սովորությունն էր։ Ճորտատեր ազնվականները, օրինակ, սովորու-
թյուն չունեին վերցնելու դրամի մանրը, իսկ հարուստ վաճառականներն իրենց



ցափ խնջույքների ժամանակ երբեմն այրվող թղթադրամներով ծխախոտ էին
վառում կամ կառքով գրոսնելիս թղթադրամները շպրտում ամբոխին։ Դա հաս-
կանալի է, որովհետև նրանք դեն էին նետում ոչ թե իրենց, այլ ուրիշների քըր-
տինքի արդյունքը։

Աշխատավոր դասակարգերն անցյալում, և առավել ևս այժմ, սոցիալիս-
տական հասարակարգում, ձգտում են խնայողաբար ծախսել սեփական աշխա-
տանքով ստեղծված արժեքները, հետևաբար և խնայողաբար, իմաստալից,
նպատակահարմար ծախսել, որպես աշխատանքի վարձ ստացած, դրամը։ Այդ
խնայողությունը ոչ մի կապ չունի ժլատության, գծուծության հետ, որը նշա-
նակում է հակառակ երևույթը՝ անհրաժեշտ կարիքների բավարարումից զրկում,
դրամի անիմաստ կուտակում և այլն։ Ու պատահական չէ, երբ Վ. Ի. Լենինը
բազմիցս շեշտել է, որ կոմունիստական հասարակությունը պատմության մեջ
ամենախնայող հասարակությունն է, որովհետև այն չի թողնում, որ անի-
մաստ կորչի մարդկային աշխատանքով ստեղծված որևէ բարիք, արժեք։

Նման երևույթը երիտասարդության մեջ այս կամ այն չափով տարածում է
գտնում զգալի չափով այն պատճառով, որ մեր կրթական հիմնարկներում
(դպրոցներում, բուհերում), ինչպես և ընտանիքում ու հասարակական կազմա-
կերպություններում մանուկներին ու երիտասարդներին, հաճախ ինչպես պետք
է, չենք սովորեցնում դրամի հետ վարվելը, այն խնայողաբար ու նպատակադիր
ծախսելը։ Մեր ուսուցիչներից ու դասախոսներից շատերը նույնիսկ «ամոթ»
են համարում երիտասարդության հետ նման հարցերի մասին խոսելը։ Երբեմն
էլ նրանք իրենք են վատ օրինակ տալիս՝ մանուկների ներկայությամբ տուրք
տալով այդ անիմաստ սովորությանը։

Կամ մի այլ երևույթ, որին մեր մամուլը, հատկապես «Երեկոյան» օրաթեր-
թը, մի քանի անգամ անդրադարձել է։ Խոսքը թաղման արարողությունների
մասին է։ Այստեղ, ինչպես ճիշտ նշվել է, տեղ ու տարածություն են գտել մի
շարք սովորույթներ, որոնք ոչ մի բանական հիմք չունեն և ոչնչով չեն արդա-
րացվում։

Նախ, անդրադառնանք թաղման բուն արարողությանը։ Կանոն է դարձել
հանգուցյալի դին կրող դագաղը ձեռքերի վրա փողոցներով երկար տարածու-
թյուն տանելը՝ խանգարելով մարդկանց ու տրանսպորտի նորմալ երթևեկու-
թյանը՝ չնայած աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովե-
տի գործադիր կոմիտեի որոշումով այդ բանի արգելմանը։ Հուղարկավորություն
թափորում ընդունված է դագաղը տանել վեր պարզած ձեռքերի վրա, աջ ու ահ-
յակ ցուցադրելով հանգուցյալին։ Կարիք չկա դատողություններ անել այս սովո-
րությունների անիմաստության մասին. ինքնին ակնհայտ է, որ սգո թափորն
ինչ-որ ցուցադրական երթի վերածելը ոչնչով չի արդարացվում։

Այնուհետև, այդ թափորները համարյա միշտ ուղեկցվում են բնական և
արհեստական ծաղիկներից պատրաստված տասնյակ, երբեմն էլ հարյուրավոր
պսակներով։ Ընդ որում, ընդունված է թաղումից հետո այդ պսակները խնամ-
քով ջարդել, կտոր-կտոր անել և լցնել գերեզմանաթմբի վրա։ Այսպիսով այս-
տեղ ևս տեղի է ունենում անիմաստ ծախսում, մանավանդ, եթե նկատի ունե-
նանք, որ այդ պսակների արժեքը կազմում է հարյուրավոր ռուբլիներ։ Մի՞թե
ավելի բանական չէր լինի այդ գումարը ջարդրտվող պսակների վրա մսխելու
փոխարեն օգտագործել հանգուցյալի ընտանիքի կարիքները ապահովելու հա-
մար, ինչպես այդ, ի միջի այլոց, արդեն սովորություն է դարձել Վրաստանում։

Թաղման արարողության հետ կապված կան նաև ուրիշ անիմաստ և նույնիսկ հակաառողջապահական սովորություններ: Ընդունված է, օրինակ, հանգուցյալին հարգելու անվան տակ, գերեզմանի վրա, նրա հիշատակին մի բաժակ գինի խմել: Եվ քանի որ գերեզմանատուն սովորաբար տանում են մեկ-երկու բաժակ, շատերը գիտակցելով նույնիսկ վարակի վտանգը, խմում են այդ միակ բաժակից, չցանկանալով «վիրավորել» հանգուցյալի հարազատներին: Այնուհետև, փողոցներում հաճախ ենք հանդիպում երկար ժամանակ չսափրված, մազակալած դեմքերով մարդկանց: Դրանք մահացած հարազատի հիշատակը «հարգողներն» են, որոնք, չգրված կանոնի համաձայն, այդ էժանագին և անհեթեթ եղանակով են արտահայտում իրենց նվիրական զգացմունքները:

Եվ այս անմիտ, բայց տարածված սովորություններին տեղի են տալիս նույնիսկ բանականորեն մտածող մարդիկ, վախենալով «ազգային սովորույթներ», «ընդունված կարգը» խախտելու մեղադրանքից, բայց ըստ էության, տոն տալով ժամանակակից քաղաքակրթված մարդու կյանքին ու գիտակցությանն անհարիր սովորույթներին:

Վիշտ կրած ընտանիքին մխիթարելու ձևերից մեկն էլ թերթերում հրապարակային ցավակցություն հայտնելն է: Սա բավականին ընդունված և տարածված ձև է: Սակայն ուշադիր նայենք թերթերը, հատկապես «Երեկոյան» թերթը, որտեղ բոլորից շատ են տպագրվում դրանք և կհանդիպենք արտառոց պատկերի: Եթե մահացել է մի սովորական մարդ, ապա ցավակցություններ են հրապարակում նրա հարազատները, բարեկամներն ու ընկերները, իսկ եթե մահացողը մի ինչ-որ հիմնարկի կամ ձեռնարկության ղեկավարի բարեկամ է, Նույնիսկ անգամ հեռավոր, ապա ոչ միայն բազմաթիվ մոտիկ ու հեռու ծանոթներ, այլև հաճախ տասնյակ հիմնարկներ, որոնք այս կամ այն ձևով ենթակա են նշված պաշտոնատար անձին, թերթում ցավակցություն են հայտնում (իհարկե, հիմնարկի հաշվին): Մի՞թե «Երեկոյան» թերթի աշխատողները, որոնք ընդհանրապես պարբերական ու գործուն պայքար են մղում անցյալի մնացուկների բազմապիսի ձևերի դեմ, չեն նկատում, որ այս դեպքում իրենք տոն են տալիս անցյալից եկող այնպիսի վատ սովորության, ինչպիսին բարձրաթոռ պաշտոնյային հաճոյանալն է ու նրա աչքին երևալու ձգտումը, որը ոչ մի կապ չունի իսկական մարդկային վշտակցության հետ:

Վերջապես, այս բնագավառի հետ կապված մի այլ սովորություն էլ հենց խակաթաղումն է ընդհանրապես: Ճիշտ է, այստեղ արդեն մենք գործ ունենք թե պես որ հինավուրց և բազմադարյան սովորության հետ: Բայց չէ՞ որ կյանքը փոխվում է և մի ժամանակ դրական համարված սովորություններն անհարիր են դառնում կյանքի փոփոխված պայմաններին ու սկսում են բացասական դեր կատարել: Այդպես է գործը հենց թաղման սովորության հարցում: Շատ ու շատ զարգացած երկրներում դիաթաղումը վաղուց արդեն փոխարինվել է դիակիզումով և գերեզմանոցներին փոխարինելու են եկել աճյունապահոցները (կոլումբարիումները): Դա անշուշտ ավելի առաջադիմական ձև է, որովհետև վերջ է տրվում թաղման հետ կապված բազմաթիվ հակասանիտարական արարողությունների ու դեռևս նախնադարից եկող նախապաշարումներին, մյուս կողմից էլ հնարավորություն է ստեղծվում վերացնել հողային տարածությունների աննպատակ զբաղեցումը:

Իսկապես, այժմ արդեն միայն Երևանը, եթե չեմ սխալվում, ունի հինգ գերեզմանատուն, որոնք գրավում են մի հսկայական, այն էլ օրըստօրե ընդարձակվող տարածություն: Ուշադիր նայեք դրանց և կտեսնեք, թե որքան միջոցներ, մարդկային եռանդ ու շնորհք է ծախսված աննպատակ: Դուք կտեսնեք այդտեղ մեր կյանքին հակասող մի երևույթ, որը հետզհետե տարածվում է՝ գերեզմանների պաշտամունքը: Մեծ մասամբ այն մարդիկ, ովքեր անաշխատ եկամուտ ունեն և մասամբ էլ օրինական ճանապարհով բարձր եկամուտներ ունեցողներից ոմանք, մեծ գումարների ծախսման գնով, չափազանց ճոխ դամբարաններ են հաստատում մեռածի հողաթմբի վրա: Այս անիմաստ և քրոջ հնից մնացած գերեզմանապաշտությունը տհաճ կոնտրաստ է մտցնում մեր գերեզմանոցներում: Համեստ, ճաշակով պատրաստված շիրմաքարը, մեր կարծիքով բավական է, որպեսզի ապրողն իր պարտքը հատուցի հանգուցյալի հանդեպ: Գերեզմանապաշտությունը խոսում է այն մասին, թե ոմանց մոտ դեռևս որքա՜ն կենսունակ են անցյալի սնահավատությունները: Մյուս կողմից, մահկանացուի շիրմային կյանքի համար արված շռայլ ծախսերը հետապնդում են և այն նպատակը, որ ընդգծում են շոշափելի կերպով հանգուցյալի իբր ոչ սովորական մարդ լինելը: Պարզ է, որ սովետական քաղաքացիների աշխարհայացքին հակասում են այս սովորույթները:

Կարծում ենք, որ վաղուց արդեն հասունացել է գոնե Երևանում դիակիզարան (կրեմատորիում) և աճյունապահոց (կոլումբարիում) կառուցելու հարցը: Դրա հետ միասին անհրաժեշտ կլինի կառուցել և պանթեոն՝ առանձնապես աչքի ընկած անհատների աճյունների պահպանման համար: Ի միջի այլոց, այդ բանը տասնյակ տարիներ արդեն կիրառվում է մեր մեծ մայրաքաղաք Մոսկվայում, ուր Կրեմլի հինավուրց պատի մեջ պահպանվում են մեր պարտիայի և պետության շատ ու շատ աչքի ընկած գործիչների դիակիզված աճյունները:

Այսպիսի միջոցառումը, իհարկե, միանգամից չի մասսայականանա ու արմատավորվի, դրա համար տարիներ կպահանջվեն: Սակայն գործը պետք է սկսել այժմ իսկ, որովհետև պետք է մտածել ոչ միայն ներկայի, այլև ապագայի մասին, գալիք սերունդների մասին, որոնց մենք պետք է իմաստալից ժառանգություն, բանական սովորույթներ թողնենք նաև այս բնագավառում:

Մահվան հետ կապված սովորությունների մի խումբ էլ կա, որը գալիս է շատ հնից: Ի՞նչ է տալիս հանգուցյալին կամ նրա հարազատներին հոգեհացը (քելեխը): Մի՞թե հարազատին կորցնելուց հետո հանգուցյալի բարեկամները կարող են սեղան բացել, մարդ ընդունել: Չէ՞ որ նրանց տրամադրությունը հակասում է դրան: Թաղումից հետո տրվող այդ «ճաշկերույթը», «հավաքույթը» մեծամասամբ վիրավորում է հանգուցյալի հարազատների զգացմունքները, հենց իրենց աչքում նսեմացնում է սեփական արժանապատվությունը:

Այդ սովորությունը կենցաղ է մտել շատ հեռավոր ժամանակներից, երբ մարդիկ հավատում էին անդրշիրիմյան կյանքին: Դա մի ծես էր, որից օգտվում էր եկեղեցին՝ հավատացյալների հոտը համալրելու համար:

Ի դեպ, նշենք, որ նախնադարյան երկրագործական ժողովուրդներից շատերն այն պատկերացումն ունեին, թե գինին կյանքի սերման խթանն է: Ուստի, արտերի ու այգիների մշակումը նրանց մոտ սկսվում էր այն ակտով, երբ գինով ցողում էին հողը: Այս արարողությունը կատարում էր գյուղի շամանը՝ հարբած վիճակում: Հեռավոր անցյալում մեր նախնիները նույնացնում էին արյունը և գինին, դրա համար էլ մահը կանխելու միտումով ստիպում էին մահամերձին գինի խմել: Այսպիսով, անցյալում գինին դիտվում էր որպես մի հեղուկ, որը մարդուն զերծ է պահում մահվան ահավոր շնչից:

Այս հանգամանքն ի նկատի առնելով միայն կարելի է հասկանալ մեզ մոտ
այնքան արմատացած հոգեհացի սովորությունը: Իռլանդիայում մինչև հիմա էլ
հոգեհացը գինարբուքի լավագույն առիթ է: Աֆրիկյան մի շարք ցեղերի մոտ
հոգեհացի գինարբուքը տևում է 3—4 օր և դա լալկան կանանց հրճվանքի
լավագույն տոնն է համարվում: Զամբեզիում, չիմյա ցեղի մոտ, հանգուցյալի
գերեզմանում փորում են մի անցք, որը լցնում են գինիով. իսկ նրա խրճիթի
կողմում, գերեզմանի վրա, մի այլ անցք են բացում, որի վրա թաղման մաս-
նակիցներն իրենց ձեռքերն են լվանում խմիչքով: Գերեզմանից տուն գալով
մահացածի այրին շատ խմիչք է խմում: Նրա տան հատակի կենտրոնում փոր-
ված է մի փոս, որը լցված է խմիչքով: Հոգեհացի մասնակիցները գդալով և
բաժակներով խմում են այդ խմիչքը: Դրանից հետո սկսվում է երկարատև կե-
րուխումը: Թաղման արարողության հետ կապված հոգեհացի և խմիչքի գոր-
ծածությունը շատ տարածված է եղել Հնդկաստանում և այլ երկրներում:

Չկարողանալով հաղթահարել հեթանոսական այդ ձևը, քրիստոնեությու-
նը Հայաստանում հոգեհացին մի այլ ֆունկցիա ևս հաղորդեց, այն, որ մե-
ռելատերը գեթ մի անգամ ճոխ սեղան է բացում թշվառների ու աղքատների
առջև: Գոհացում տալով սրանց տառապանքներին, մեռելատերը, որպես թե,
նպաստում է հանգուցյալի մեղքերի քավությանը:

Հին, կրոնական ծեսերից մնացել են նաև այսպես կոչված յոթնեկի և քա-
ռասունքի արարողությունները, որոնք հանդիսանում են անիմաստ և ան-
նպատակ սնոտիապաշտություն և անհամատեղելի են զարգացած սովետական
մարդու կենցաղին:

Ընդհանրապես թաղման հետ կապված արարողությունների և սովորու-
թյունների ամբողջ կոմպլեքսը խիստ վերափոխման կարիք է զգում: Դրա հետ
կապված են նաև այլ սովորություններ և գործարքներ՝ լրացուցիչ վարձ «լավ»
տեղի համար, «աղքատ» ձևացող մարդկանց կողմից մյուսների նվիրական
զգացմունքների վրա ազդելու միջոցով ողորմածության հավաքում և այլ՝ հին
աշխարհից մնացած բարքեր, որոնք վաղուց են իրենց դարն ապրել:

Թաղման արարողության մասին մեր մտքերը ոմանք, գուցե և շատերին,
վիրավորական թվան, «սրբապղծություն» համարվեն: Բայց համոզված ենք, որ
դա միայն առաջին տպավորությունը կլինի, որովհետև խոր մտածելուց հետո
նրանք կզգան, որ կյանքում միայն կույր զգացմունքներով ղեկավարվել չի կա-
րելի, ինչպես, առավել ևս, չի կարելի տուրք տալ այն հնին, որն իր անհրա-
ժեշտությունն ու իմաստը կորցրել է սոսկ նրա համար, որ դա հին անցյալից
եկող կամ տարածում գտած «պապական» սովորություն է:

Առօրյա կյանքում մի երևույթի հետ էլ ենք հաճախ հանդիպում: Այն ևս
«ազգային սովորույթների» թվին է դասվում: Խոսքը օժիտի մասին է: Քանի՜-
քանի՜ դեպքեր կարելի է հիշել կյանքից, երբ այդ փուչ օժիտը կործանել է շատ
երիտասարդների:

Օժիտն առաջացել է ապրանքների փոխանակության ծագումից հետո:
Հայր իշխանության պայմաններում կինը համարվում էր լոկ զավակներ բե-
րող մի էակ, ոչ լիարժեք մարդ: Ուստի ամուսնացող տղամարդը ամուսնացող
աղջկա ծնողներից պահանջում էր լրացուցիչ արժեք՝ կնոջ թերին լրացնելու հա-
մար: Նարերով օժիտը տալիս էին իրերով, անասուններով, գույքով և կայքով:
Հետագայում այդ բանն սկսվեց կատարվել նաև դրամով: Մինչև օրս առկա այդ
հին սովորությունը դառն խոստովանություն է կնոջ ստրկական անցյալի մա-



սին: Ուստի, նրանք, ովքեր տուրք են տալիս այդ սովորությանը, մեր կարծի-
քով, խորապես վիրավորում են լիիրավ, տղամարդուն հավասար, սովետական
կնոջ արժանապատվությունը:

***

Բարքերն ու սովորությունները, ընդհանրապես մարդկանց կենցաղը մի
բնագավառ է, որը նշանակալի չափով ազդում է մարդկանց բարոյական հաս-
կացությունների և դրանով իսկ, նրանց ամբողջ գիտակցության ձևավորման
վրա: Այդ բանը շատ լավ է ըմբռնել քրիստոնեական եկեղեցին, որը կրոնա-
կան հրանգ է տվել, կրոնական ծեսի է վերածել կենցաղի շատ ու շատ երև-
ույթներ՝ կնունք, հասունացում, հարսանիք, թաղում և այլն: Դրանք որոշակի
կանոններով կարգավորելով, եկեղեցին կարողացել է այս կամ այն չափով իր
ազդեցության տակ գցել աշխատավոր զանգվածներին, իր ցանկացած (ըստ
էության՝ իշխողներին անհրաժեշտ) ուղիով ձևավորել մարդկանց բարոյական
հասկացությունները:

Մեր օրերում եկեղեցու դերն այդ հարցերում վիթխարի չափով նվազել է,
որովհետև գիտա-աթեիստական դաստիարակության շնորհիվ ժողովրդի հիմ-
նական զանգվածը զերծ է նրա ազդեցությունից: Սակայն չի կարելի թերագնա-
հատել նույնիսկ այն փոքրիկ ազդեցությունը, որը եկեղեցին ունի հասարակու-
թյան մի մասի վրա և առավել ևս չի կարելի թուլացնել դրա դեմ մղվող պայ-
քարը, որովհետև կրոնը հնացած ու վնասակար դարձած սովորույթների, ինչ-
պես և դրանց տեսքով քողարկված երևույթների պահպանման ու տարածման
հիմնական աղբյուրներից մեկն է:

Կրոնական մնացուկների դեմ մղվող պայքարը հարցի միայն մեկ կողմն է:
Մեր կյանքին հակասող նշված, ինչպես և այլ սովորույթներն հաղթահարելու
համար անհրաժեշտ է մեր հասարակության բոլոր դաստիարակող օղակների՝
պարտիական, կոմերիտական, պիոներական կազմակերպությունների, արհ-
միությունների, դպրոցի ու այլ կրթական հիմնարկների համաձայնեցված,
միասնական ճակատով հարձակում:

Այստեղ թերացման ու զիջումների տեղ չկա, որովհետև խոսքը պատմու-
թյան մեջ ամենաարդարացի, ամենաբարձր ու զարգացած կոմունիստական հա-
սարակություն կառուցող մարդկանց բարոյական հասկացությունների հետագա
կատարելագործման, նրանց ամբողջ գիտակցության բարձրացման, աճող սե-
րնդին անցյալի մի շարք արգահատելի մնացուկներից զերծ պահելու մասին է:
Ուստի անհրաժեշտ է, որ դրանք դառնան մեր հասարակական կազմակերպու-
թյունների, աշխատանքային կոլեկտիվների լայն քննարկման առարկա: Դա ա-
ռաջին հերթին վերաբերում է պարտիական կազմակերպություններին, որով-
հետև ինչպես կյանքի մյուս բոլոր բնագավառներում, այստեղ ևս կոմունիստ-
ները պետք է ոչ միայն տոն տան նորին ու լավին, այլև բացահայտ ու հա-
մարձակ պայքար մղեն հնի, մահացողի դեմ, ցույց տան բարձր գիտակցության
տեր մարդու լավագույն օրինակ:

Այնինչ կյանքում մենք հաճախ ականատես ենք լինում, թե ինչպես կո-
մունիստը, երբեմն նույնիսկ ղեկավար աշխատողը, տուրք է տալիս նշված
կեղծ սովորույթներին՝ հանդես է գալիս «շաբաշ» տվողի դերում, աշխատա-
վարձ ստանալիս չի վերցնում մանր դրամը, որևէ հիմնարկից դրամ ստանալիս

*գանձապահին ինչ-որ գումար է թողնում և այլն։ Այս երևույթներն այնքան
խորն են արմատացել կյանքում, որ մենք հաճախ չենք նկատում, չենք հաս-
կանում դրանց վնասակարությունը, անում ենք այնպես, ինչպես «բոլորն են
անում», չմտածելով, որ դրանով նսեմացնում ենք ինչպես մեր սեփական անձի,
այնպես էլ դիմացի մարդու արժանապատվությունը։*

*Հիշում եմ, տարիներ առաջ մի հիմնարկից դրամ պետք է ստանայի։ Գան-
ձապահը չկար և հաշվապահը՝ արդեն հասակավոր մի մարդ, բարի գտնվեց
ձևակերպել և վճարել դրամը։ Ես, ինչպես «ընդունված» էր, դրամը վերցնելուց
հետո նրան մեկնեցի մի թղթադրամ։ Նա... այդ տարիքավոր մարդը ետ մղելով
իմ ձեռքն ու թղթադրամը, այնպես նայեց աչքերի՛ս և ասաց.*

*— Ձեր ամաչո՞ւմ։ Ինչո՞ւ եք տալիս այդ դրամը։ Մի՞թե չեք մտածում, որ
Ձեր դիմացինի մարդկային արժանապատվությունը կարող եք վիրավորել։
Մի՞թե ես մուրացկան եմ, որ ինձ քրտինքով չվաստակած դրամ եք մեկնում...*

*Այդ դեպքն ինձ առիթ տվեց լրջորեն մտածելու նման երևույթների մասին։
Հիրավի, ինչո՞ւ ենք մենք չմտածված կերպով նվաստացնում մեր սովետական
մարդկանց, կոմունիզմ կառուցող մարդկանց արժանապատվությունը։*

*Կոմունիստը պետք է մտածի այս բոլորի մասին։ Եվ ոչ միայն մտածի,
այլև ամենուր, ամեն ժամ բացահայտորեն դեմ կանգնի նման սովորույթներին
և մյուսներին հասկացնի դրանց վնասակարությունը։ Կոմունիստը պետք է լինի
նոր բարքերի ու սովորությունների, կոմունիստական բարոյականության և գի-
տակցականության անխոնջ պրոպագանդիստը։ Մարդկանց կոմունիստական
բարոյականության հիմնական գծերը, կոմունիզմ կառուցող մարդու բարոյա-
կան կոդեքսը հիանալի ձևով շարադրված են Սովետական Միության Կոմունիս-
տական պարտիայի նոր Ծրագրում։ Հենց այդ վեհ սկզբունքները կյանքում ա-
վելի լայն արմատավորելու համար անհրաժեշտ է մեր, իրոք որ, վիթխարի գա-
ղափարական, կուլտուրական, գիտա-աթեիստական դաստիարակության մեջ
ավելի մեծ տեղ հատկացնել կենցաղային հարցերին, անհրաժեշտ է մշակել և
արմատավորել նոր սովորույթներ ու բարքեր։ Իսկ բերված մի քանի օրինակ-
ները ցույց են տալիս, որ նոր սովորույթների մշակման կարիքը շատ կա։*

*Մինչև այժմ մենք նման հարցերով հարևանցիորեն և շատ քիչ ենք զբաղ-
վել։ Դրա վրա հատկապես բացասական է անդրադարձել Ստալինի անձի պաշ-
տամունքի շրջանը, որի ժամանակ մոռացության էին տրվել նույնիսկ ռևո-
լյուցիայից հետո պարտիայի ջանքերով մշակված ու կենցաղ մտած մի շարք
սովորույթներ՝ «Կարմիր կնունք», «Կոմերիտական հարսանիք» և այլն։ Անհատի
պաշտամունքի տիրապետության մերկացումից հետո այդ հարցերում որոշ աշ-
խուժություն է նկատվում. վերակենդանացել է կոմերիտական հարսանիքների
սովորությունը. մամուլը («Երևան», «Ավանգարդ» թերթերը մասնավորապես)
տպագրում է անցյալի սովորույթների ու բարքերի մնացուկները մերկացնող
հոդվածներ, Պետհրատը բրոշյուրներ է հրապարակում այդ հարցերի մասին։
Բայց այդ բոլորը դեռևս հիմնականում նեգատիվ բնույթ ունեն, այսինքն՝ դեռևս
մերկացնում են բացասական սովորույթներն ու բարքերը, փոխարենը չառա-
ջադրելով մեր կյանքին համապատասխան որևէ նոր սովորույթ կամ արարո-
ղություն։*

*Այժմ, երբ մեր երկրում անցում է կատարվում սոցիալիզմից դեպի կոմու-
նիզմ, երբ ամբողջ սրությամբ դրված է մարդկանց գիտակցության մեջ բարոյա-
կանության կոմունիստական սկզբունքների հետագա ամրապնդման հարցը,*



*ժամանակն է լրջորեն մտածել կենցաղային նոր սովորույթների մշակման ու
արմատավորման մասին։ Դրա համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է առաջին
հերթին խորը կերպով ուսումնասիրել Սովետական Միության մյուս ազգերի
կյանքում արմատացած նոր, կոմունիստական սովորույթներն ու բարքերը, այ-
նուհետև ուսումնասիրել ընդհանրապես աշխարհի բոլոր ժողովուրդների կյան-
քում եղած սովորույթների մեջ տեղ գտած դրականն ու գնահատելին։ Եվ, վեր-
ջապես, անհրաժեշտ է լրջորեն ուսումնասիրել և հրապարակել մեր ժողովրդի
հատկապես ազգային սովորույթները։*

*Դրանց մասին ժամանակին հսկայական նյութեր է հավաքել ու հրապարա-
կել Հայոց ազգագրական ընկերությունը՝ Երվանդ Լալայանի ղեկավարությամբ։
Այժմ էլ հավանորեն ոչ պակաս նյութեր են հավաքել Գիտությունների ակադե-
միայի Պատմության ինստիտուտը և Պատմության թանգարանը։ Հարկավոր է
մեծ խնամքով ուսումնասիրել դրանք և, վեր հանելով այնտեղ եղած դրակա-
նը, մշակել ու հասարակությանը հրամցնել այդ սովորույթները, նրանց մեջ
պատվաստել նորի առավելության գաղափարը։ Ազգագրական գրականության
հետ ունեցած ծանոթությունից և կամ ծեր մարդկանց հետ ունեցած զրույցնե-
րից, շատերը գիտեն մեր ժողովրդի, օրինակ, հարսանիքի հետ կապված մի
շարք սովորույթներ, որոնք մոռացության են տրված, թեև շատ դրական ու
իմաստալից բաներ են պարունակում իրենց մեջ։*

*Վերջապես, ըստ երևույթին, հասունացել է նոր կենցաղի հարցերով լրջո-
րեն զբաղվող, նոր սովորույթներ մշակող ու հանձնարարող մի ինչ-որ հասա-
րակական օրգան ունենալու հարցը։ Ճիշտ կլիներ, իհարկե, եթե այդ հարցերով
զբաղվեր Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերությունը։
Մեր կարծիքով հասունացել է այդ խոշոր և լուրջ գործ կատարող ընկերության
մեջ նոր կենցաղի պրոպագանդման մի հատուկ օղակ կազմակերպելու հարցը։
Պարտիական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների
հետ համագործակցելով, իր աշխատանքին ներգրավելով հին կոմունիստներին
և կոմերիտականներին, ուսուցիչներին ու դասախոսներին, այն կդառնար նոր
սովորույթներ մշակող և հանձնարարող մի գործուն օրգան։*

*Այստեղ հարկ է հիշել ընկեր Ն. Ս. Խրուշչովի խոսքերը, որը շատ ճիշտ
նկատել է, որ մենք պետք է ձգտենք հենց այժմ թոթափել մեզանից հին աշ-
խարհի մնացուկների բեռը, չէ՞ որ մենք դրանց կոմունիզմ չենք տանելու։ Դա միանգամայն ճիշտ է։ Միաժամանակ պետք է
ասել, որ մենք պետք է ձգտենք հենց այժմ հաղթահարել մեր կյանքն աղտոտող, սովետական մարդու արժանապատվությունը նսեմացնող սովորույթները
և լայն ճանապարհ բանանք նոր, կոմունիզմ կառուցողի վսեմ բարոյական կեր-
պարին համապատասխանող բարքերի ու սովորությունների համար։*

կայի բազմաթիվ առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը, ինչպես օրինակ՝ Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության (այժմ՝ սովխոզ), Կամոյի շրջանի Նորադուզ գյուղի կոլտնտեսության, Վեդու շրջանի Կիրովի անվան սովխոզի փորձը ցույց է տալիս, որ աշխատանքային օրվա խրոնոգրաֆիայի միջոցով նորմավորման գիտա-տեխնիկական մեթոդի կիրառումը արմատապես բարելավում է աշխատանքների նորմավորման ու տարիֆավորման գործը։ Կանոնադրությունով պետք է նախատեսվի, որպեսզի կոլտնտեսության վարչությունը իրավունք ունենա անհրաժեշտ ծախսեր կատարելու կապված գիտա-տեխնիկական նորմավորում իրականացնելու հետ, ինչպես օրինակ՝ մասնակցել միջկոլտնտեսային նորմավորման կայանի պահպանման ծախսերին, խոշոր կոլտնտեսությունների հաստիքում մյուս մասնագետներին հավասար ունենալ որակյալ տնտեսագետ—նորմավորող, նրա վրա դնելով կոլտնտեսության արտադրության պայմանների փոփոխություններին համապատասխան աշխատանքների նորմավորման ու տարիֆավորման գործի ամենամյա մշակումը և սիստեմատիկ կատարելագործումը։

Տնտեսությունը վարելու գիտականորեն հիմնավորված սիստեմի արմատավորումը կնպաստի ոչ միայն գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի ավելացմանը, այլև արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեցմանը, որը նույնպես կոլտնտեսությունների կարևորագույն խնդիրն է և պետք է լինի բոլոր կոլտնտեսականների ուշադրության կենտրոնում։ «Արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար մղվող պայքարը,— նշել է Ն. Ս. Խրուշչովը,— արմատական հարցերից մեկն է»։ Միայն գյուղատնտեսական մթերքների արտադրության անընդհատ աճի և նրանց ինքնարժեքի զգալի իջեցման պայմաններում կարելի է ապահովել արտադրության բարձր շահութաբերություն, համապատասխան մթերքների գնման և պետական մանրածախ գների իջեցումը, որը կնպաստի երկրի բնակչության կյանքի նյութական մակարդակի հետագա բարձրացմանը։

Գյուղատնտեսության պլանավորման նոր կարգի, արտադրության կենտրոնացման ու մասնագիտացման առավելություններն անժխտելի են։

Ապահովել արտադրության ճիշտ մասնագիտացումը, իրականացնել անհրաժեշտ համակենտրոնացում՝ այդ նշանակում է ապահովել հողի, աշխատանքային ռեսուրսների և տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը, աշխատանքի բարձր արտադրողականությունը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և ընդհանրապես բարձր շահութաբեր տնտեսության կազմակերպումը։ Հայտնի է, որ կոլտնտեսությունների բազմաճյուղ զարգացում կազմակերպելու ճիշտ սկզբունքը շատ դեպքերում հասցրել է ունիվերսալ տնտեսությունների ստեղծման, որոնց մեջ տեղադրված են երկրագործության ու անասնաբուծության բոլոր հնարավոր ճյուղերը։ Սա է պատճառներից մեկը, որ ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում պահում են ոչ խոշոր անասնաբուծական և, մանավանդ, խոզաբուծական ու թռչնաբուծական ֆերմաներ։ Ուստի, առավելագույն չափի մթերքների արտադրությունն ապահովելու համար անհրաժեշտ է Կանոնադրության մեջ նախատեսել կոլտնտեսության գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման հիմնական դրույթները, հաշվի առնելով համապետական շահերը և հանրային տնտեսության ռացիոնալ վարումը։ Այս դրույթներն ամենայն ճշգրտությամբ ձևակերպված են պարտիայի Ծրագրում, որտեղ ասված է. «Իրագործել գյուղատնտեսության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխումը ըստ բնատնտեսական գոտիների ու շրջանների, նրա ավելի խոր ու կայուն մասնագիտացում, առավելապես ավելացնելով գյուղատնտեսական արտադրանքի այն տեսակի արտադրությունը, որի համար լավագույն պայմաններ կան և որը ավելի քիչ ծախսեր է պահանջում»։

Կանոնադրության մեջ գյուղատնտեսական մասնագիտացման ուղղությունների որոշումը, հաշվի առնելով տնտեսության կոնկրետ պայմանները, տնտեսության հիմնական առաջատար ու օժանդակ ճյուղերը և նրանց կազմակերպման ձևերը (իրենց տնտեսության ներսում, ինչպես նաև միջկոլտնտեսային ձեռնարկության միջոցով), կլինի այն նախադրյալը, որ կկանխորոշի գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի շահութաբեր վարելու հնարավորությունը։

Կոլտնտեսային արտադրության ամրապնդման կարևոր պայման է աշխատանքի ճիշտ կազմակերպումը և տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը։ ՄՏ կայանների վերակազմումից և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելուց հետո երկրի տնտեսությունների մի զգալի մասը կազմակերպեց տրակտորա-դաշտավարական կամ կոմպլեքսային բրիգադաներ։ Սակայն եղան նաև շատ կոլտնտեսություններ, մանավանդ, անդրկովկասյան ռեսպուբլիկաներում, որոնք ընթացան արտադրական բրիգադները պահպանելու և ինքնուրույն տրակտորային բրիգադներ կազմակերպելու ուղիով։



Տրակտորա-դաշտավարական բրիգադներ կազմակերպելու ակնառու օրինակ են երկրի, ինչպես նաև Հայկական ՍՍՌ-ի կոլտնտեսությունների և, մանավանդ, Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ գյուղի, Ստեփանավանի շրջանի Ուռուտ գյուղի և ուրիշ կոլտնտեսություններ, որտեղ ՄՏ կայանների վերակազմումից հետո կազմակերպվել են տրակտորա-դաշտավարական բրիգադներ։ Եթե մինչև ՄՏ կայանների վերակազմումը Այգեշատ գյուղի կոլտնտեսությունում կար 8 արտադրական բրիգադա, ապա այժմ գործում է 3 տրակտորա-դաշտավարական բրիգադա, իսկ Ուռուտ գյուղի կոլտնտեսությունում 6 բրիգադի փոխարեն կա 2-ը և յուրաքանչյուր բրիգադին 2,5 անգամ ավելի հող է ամրացված։ Հողի յուրաքանչյուր հեկտարի հաշվով բրիգադների ղեկավար անձնակազմի թիվը կրճատվել է ավելի քան երկու անգամ և համարյա երկու անգամ նվազել է այդ անձնակազմի պահպանման ծախսը։ 15 ուժանոց տրակտորի արտադրանքն ավելացել է 15—20 տոկոսով, պայմանական հեկտարի հերկի ինքնարժեքն իջել է ավելի քան 20 տոկոսով։

Անհրաժեշտ է Կանոնադրության մեջ սահմանել մեքենայացված արտադրական բրիգադների կազմակերպման կարգը, նրանց կազմն ու չափը որոշելու սկզբունքները, ինչպես և կազմակերպման սիստեմը։

Որպեսզի կոլտնտեսականների նախաձեռնությունը է՛լ ավելի բարձրանա և նրանք ավելի ակտիվորեն մասնակցեն բրիգադի կառավարմանը, անհրաժեշտ է կարգ սահմանել, որ բրիգադավարն ընտրվի բրիգադի անդամների ընդհանուր ժողովում և ապա հաստատվի կոլտնտեսության վարչության կողմից, ինչպես նաև բրիգադավարներին ու ֆերմաների վարիչներին ամենօրյա օգնություն ցույց տալու համար պետք է նպատակահարմար համարել բրիգադների ու ֆերմաների մշտապես գործող խորհուրդների ստեղծումը։

Եկամուտների բաշխման ժամանակ հանրային տնտեսության կուտակումների և սպառման ֆոնդերի ճիշտ զուգակցումը բացառիկ կարևոր նշանակություն ունի կոլտնտեսությունների հաջող զարգացման գործում։

Պարտիայի Ծրագրում ասված է, որ «Կոլտնտեսությունների հաջող զարգացման պայմանը եկամուտները բաշխելիս կուտակման և սպառման ճիշտ զուգորդումն է։ Կոլտնտեսությունները չեն կարող զարգանալ առանց մշտապես ընդլայնելու իրենց արտադրական, ապահովագրական, կուլտուր-կենցաղային հանրային ֆոնդերը։ Միևնույն ժամանակ յուրաքանչյուր կոլտնտեսության պարտադիր կանոնը պետք է լինի՝ մեծացնել հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները և բարձրացնել նրանց կենսամակարդակը աշխատանքի արտադրողականության աճին համեմատ»։ Այս սկզբունքները պետք է կազմեն կոլտնտեսային արտելի Կանոնադրության «Եկամուտների բաշխումը» բաժնի հիմքը։

Կոլտնտեսության նոր Կանոնադրության մեջ անհրաժեշտ է անբաժանելի ֆոնդերի լրացման հատկացումների նորմաներն զգալիորեն ընդլայնել, սահմանելով դրանց դիֆերենցված չափեր՝ նայած յուրաքանչյուր կոլտնտեսության դրամական եկամուտներին։ Ճիշտ այդպես էլ նոր Կանոնադրության մեջ պետք է նշված լինի, որ շրջանառու միջոցների և կոլտնտեսականների ավանսավորման ֆոնդերը ստեղծվում են այն չափերով, որոնք անհրաժեշտ են կոլտնտեսության նորմալ արտադրական գործունեության և ամեն ամիս կոլտնտեսականների աշխատանքի անխափան վարձատրման համար։

Պետք է նշված լինի նաև, որ անհրաժեշտ է ընդհանուր եկամուտից ստեղծել սպառման ֆոնդ, բաժանելով այն անհատական և հանրային սպառման ֆոնդերի։ Անձնական սպառման ֆոնդը պետք է բաղկացած լինի աշխատանքի հիմնական վարձատրման ֆոնդից և լրացուցիչ վարձատրման ֆոնդից։

Աշխատանքի հիմնական վարձատրման ֆոնդի նվազագույն մակարդակը պետք է ապահովի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը, համապատասխանի անհրաժեշտ հանրօգուտ աշխատանքի ծախսումների մակարդակին։ Ուստի հաշվի առնելով կոլտնտեսային արտադրության գործում տեղի ունեցած փոփոխությունները և կոլտնտեսականների առջև դրված խնդիրները՝ պետք է վերանայել կոլտնտեսությունների եկամուտների բաշխման գոյություն ունեցող սիստեմը, այն հաշվով, որ ապահովվի անհրաժեշտ կուտակումներ ընդլայնված վերարտադրության համար և ավելացվեն կոլտնտեսականների եկամուտները հանրային տնտեսությունից։

Արդ պետք է վերանայել գործող Կանոնադրության համապատասխան՝ «կոլտնտեսության բոլոր եկամուտները բաշխելուց հետո միայն, մնացորդը կոլտնտեսականների աշխօրերին բաշխելու» մասին դրույթը, քանի որ այն ոչ բոլոր դեպքերում է ապահովում աշխատանքի վարձատրությունը։ Հիմնական վարձատրությունը կանոնավորելու հետ միասին, կոլտնտեսության նոր Կանոնադրությունում լուրջ տեղ պետք է տրվի լրացուցիչ վարձատրության ճիշտ սիստեմի ներդրմանը, որպես կոլտնտեսականների՝ իրենց աշխատանքի արդյունքների մեջ, նյութական

յանին՝ վաղօրոք միջոցներ ձեռք առնել, որպեսզի հարկ եղած դեպքում, երբ Լենը ազդանշան կտա, նրանք կարողանան զինված ուժեր ուղարկել Թիֆլիս, որտեղ հակառևոլյուցիոն տարրերը ավելի ուժեղ էին, քան մի այլ տեղում: Պետք էր պատրաստ լինել Թիֆլիսի պրոլետարիատին օգնություն հասցնելու համար:

Նման պատասխանատու և կարևոր նշանակություն ունեցող ռազմական հանձնարարություն Շահումյանը կարող էր տալ միայն մի այնպիսի ընկերոջ, որին նա լիովին վստահում էր:

Արվելաձեն հենց այդպիսի վստահելի լենինյան մարտիկ էր, որը միշտ էլ սրբությամբ է կատարել իր պարտականությունները:

Որտեղ էլ եղել է Արվելաձեն, պայքարի ճակատներում, թե որպես պարտիական ագիտատոր-կազմակերպիչ բանվորական շրջաններում ու ցարական բանակում, համաշխարհային պատերազմի խրամատներում և հետագա քաղաքացիական կռիվների բովում՝ Քութայիսից սկսած մինչև Թիֆլիս, Ալեքսանդրապոլ, Բաքու (հատկապես Բաքվում, որտեղ նա Կոմունայի աչքի ընկնող գործիչներից մեկն էր), մինչև հեռավոր Աստրախանի լայնածավալ տափաստանները,— նա անձնազոհությամբ ծառայել է մեր պարտիային և աշխատավորության շահերին:

Արվելաձեն վայելում էր մեր պարտիայի վստահությունը և հենց այդ պատճառով, երբ նոյեմբերի կեսերին Անդրկովկասում ծավալվեցին Համառուսաստանյան Սահմանադիր ժողովի ընտրությունները, բոլշևիկների ցուցակում, Անդրկովկասի ընտրական օկրուգից, Ստեփան Շահումյանի, Սարգիս Խանոյանի և մյուս անվանի գործիչների կողքին մենք կարդում ենք նաև Պյոտր Արվելաձեի անունը:

Հիշողության հեռու մշուշում աղոտ կերպով ուրվագծվում են բոլշևիկ Արվելաձեի դիմագծերը. բայց ի մի բերելով նրա բուռն գործունեությունը, իմ առջև հառնում է վրաց ժողովրդի ազնիվ և անձնազոհ զավակի, ինտերնացիոնալիզմի և եղբայրության ջատագովի, բյուրեղյա ու անվեհեր զինվորի պայծառ կերպարը:

Մեր պատմաբանները սիրում են հայ-վրացական եղբայրության և մտերմության նմուշներ որոնել անցած դարերի մեջ: Բազմաթիվ են այդ նմուշները: Այդ բարեկամության վառ վկայությունն է Արվելաձեի անձնազոհ բեղմնավոր գործունեությունը Ալեքպոլի բոլշևիկյան պարտկազմակերպության և քաղաքի հայ աշխատավորության շարքերում՝ ոչ այնքան հեռու անցյալում, հենց մեր նորոգ կյանքի շեմին: Մենք ծանոթ ենք նման եղբայրական համագործակցության հայ, վրացի, ադրբեջանցի, ռուս և բազում այլ ժողովուրդներին պատկանող գործիչների պրակտիկայում. դա մեզ համար այժմ սովորական բան է, բայց միշտ հիացմունքի արժանի: Նրանց թիվը քիչ չի եղել մանավանդ այն տարիներին, երբ Արվելաձեի նման անհամար ընկերներ անշիրիմ ընկան Հոկտեմբերյան ռևոլյուցիայի համար մղվող բոցավառ պայքարի մարտերում: Նրանց հիշատակը ապրում է մեր սրտում և թող ապրի հետագա սերունդների երախտապարտ սրտերում, թող նրանց անունները հիշվեն ամենուր ու միշտ՝ լենինյան վառ դրոշների հաղթական ծփանքով, կոմունիզմի արևաշող երկնքի տակ:

Չմոռանա՛նք նրանց երբեք...

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

Մեր ամսագրի № 7-ում տպագրված Փարսադանյանի «Գյուղական բժիշկը» ակնարկում ասված էր, որ Արմաշ գյուղի բժիշկ Հայրյանը կենդանիների վրա փորձեր է կատարում՝ նպատակ ունենալով պարզելու, թե հնարավո՞ր է արդյոք, առանց վիրահատության հեռացնելու մարդու միզապարկում առաջացած քարերը: Ընթերցողներ Օ. Հակոբջանյանը, Փ. Ջիլփինյանը, Ռ. Ղուկասյանը, Բ. Հովհաննիսյանը, Գ. Հարությունյանը և Ս. Սարգըսյանը խմբագրությանն ուղարկած իրենց նամակներում հարցնում են. ի՞նչ արդյունք են տալիս բժիշկ Ա. Հայրյանի խիզախ փորձերը. ե՞րբ է հնարավոր այն պրակտիկայում կիրառել և վերջապես ի՞նչ պայմաններ են ստեղծված նորարար բժշկի հետագա հետազոտությունների համար: Մեր խնդրանքով բժիշկ Ա. Հայրյանը պատասխանում է ընթերցողների հարցերին, որը տպագրում ենք ստորև:

### ՓՈՐՁԵՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ ԵՆ

*Հարգելի ընկերնե՛ր։*

*Շնորհակալություն ուշադրության համար։ Խորին հարգանքով ու մեծ սիրով պատասխանում եմ Ձեր հարցերին։*

*Երրորդ տարին է ինչ զբաղվում եմ տվյալ հարցով։ Այն ինձ մոտ մտահղացվել է բնության մեջ գոյություն ունեցող այն երևույթից, որ շները, ինչպես և շատ գիշատիչներ (օրինակ, գայլը, արջը և այլն) ընդունելով տարբեր տեսակի դժվարամարս կեր, հաճախ էլ ոսկորը, նորմալ մարսում են, առանց վնաս պատճառելու իրենց աղեստամոքսային տրակտի լորձաթաղանթին։*

*Նշված պրոցեսի ֆիզիոլոգիան շատ պարզ է։ Ոսկորները և մյուս կոշտ կերը շան և գիշատիչների աղեստամոքսային տրակտում, ստամոքսում արտադրվող հյութի, աղաթթվի ազդեցության տակ մարսվում են։*

*Իսկ չի՞ կարելի այդ օրգանական նյութով ազդել մարդու օրգանիզմում առաջացած միզաքարերի վրա։ Այն, ինչ մի քանի ժամվա ընթացքում ստամոքսում քայքայում է կարծր ոսկորը, չի՞ կարող արդյոք քայքայել տարբեր բաղադրությամբ, կարծրությամբ ու մեծությամբ քարերը, որոնք ստիճանաբար առաջանում են մարդու օրգանիզմում։*

*Մեզ մոտ ծագած այդ հարցին պատասխանելու նպատակով, մեր կողմից սկզբում փորձեր են կատարվել պրոբիրկաներում, որոնց արդյունքները ցույց են տվել, որ շան ստամոքսահյութը տարբեր ժամանակամիջոցներում փխրացնում է այդ քարերի որոշ տեսակները, հատկապես ֆոսֆատները, որոնք շատ են հանդիպում պրակտիկայում։ Բայց պրոբիրկայում պայմաններն այլ են, իսկ ստամոքսում կամ միզապարկում՝ այլ։*

*Այդ նպատակով, որպեսզի մեր փորձերը մոտ լինեն բնական պայման-*

ներին, միզաքարերը հատուկ ձևով մտցվել են շան ստամոքսը, որտեղ նրանք թողնվել են 6-ից 8 ժամ։ Այդ փորձերի արդյունքները եղել են դրական, որոնք կատարվել են Երևանի բժշկական ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնում, նրա վարիչ դոցենտ Գ. Պ. Մուշեղյանի ղեկավարությամբ։

Մեզ թվում է, որ գիշատիչների ստամոքսահյութի ազդեցությունը ավելի ուժեղ է, քան շներինը, քանի որ նրանք ստիպված են ընդունել ավելի կոպիտ ու դժվարամարս կեր։ Ցավոք սրտի, մենք հնարավորություն չենք ունեցել նման փորձեր կատարել։

Մեր էքսպերիմենտների հաջորդ էտապը, ստամոքսահյութը շան միզապարկը մտցնելն է և նրա ազդեցության արդյունքների ստուգումն է միզապարկի լորձաթաղանթի վրա։ Այդ չափազանց կարևոր հարցով ներկայումս զբաղվում է Ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտի ավագ գիտական աշխատող Հովհ. Հովհաննիսյանը։ Նրա ստուգումների առաջին արդյունքներն այնպիսին են, որ ստամոքսահյութը ոչ մի բացասական ազդեցություն չի թողնում միզապարկի լորձաթաղանթի վրա, մի բան, որը շատ անհրաժեշտ է հետագայում կլինիկական էքսպերիմենտներին անցնելու։

Աշխատանքներն այդ ուղղությամբ շարունակվում են, բայց չի կարելի ասել, որ նրանք կատարվում են պլանավորված, ընթանում են արագ և դրա համար ստեղծված են պայմաններ։

Այդ հարցը, իհարկե, շատերի համար է հետաքրքիր։ Դա առավել ևս հետաքրքիր է մեզ համար, որի ստուգումն ու լուծումը կապված է լուրջ դժվարությունների հետ։ Դժվարությունները հաղթահարելու համար անհրաժեշտ է մի շարք մասնագետների միացյալ գործունեությունը։ Բավական չէ իդեայի ծագումը, ավելի կարևոր է նրա հաստատելը։

Դժվար է այժմ պատասխանել, թե ինչպիսի արդյունքների մենք կարող ենք հասնել, աշխատելով այդ ուղղությամբ։ Բայց համենայն դեպս, անկախ նրա վերջնական արդյունքներից, մենք որոշել ենք այսուհետև ավելի համառորեն աշխատել այդ ուղղությամբ, որին ակտիվորեն մասնակցում են վերը հիշատակված, փորձված ու ճանաչված ավագ ընկերները։ Շարունակելով աշխատանքներն այդ հարցում, մենք սպասում ենք և ուրիշ ավագ ընկերների օգնությանը և խորհուրդներին, որոնք որևէ կերպ կարող են մեզ օգնել այդ գործում։ Մեզ թվում է, որ ինչքան շատ կոմպետենտ մարդիկ զբաղվեն այդ հարցով, այն ավելի շուտ կստանա իր լուծումը։ Կարևորը միայն այն է, թե երբ կլուծվի հարցը, այլ ոչ այն, թե ով կլուծի։

Մեզ թվում է, որ ընկ. Ռ. Փարսադանյանը որոշ շտապողականություն է ցուցաբերել, առանց վերջնական տվյալների, հայտնելով այդ չավարտված փորձերի մասին, որոնք սկզբում անհանգստացնում էին մեզ, իսկ այժմ էլ հանգիստ չեն տալիս նաև ուրիշներին։ Մեզ ավելի լավ կզգայինք, եթե այդպիսի հաղորդագրությունը տպվեր ավելի ուշ, կատարվող էքսպերիմենտների վերջնական արդյունքներն ստանալուց հետո։ Բայց մենք համաձայն ենք ընկ. Ռ. Փարսադանյանի հետ, որ մամուլում տվյալ հարցի արծարծումը կօգնի գործին։ Համապատասխան օրգանների օժանդակությամբ մենք հնարավորություն կունենանք սկսած գործը մինչև վերջ հասցնելու։

Ա. ՀԱՅՐՅԱՆ
Վեդու շրջանի Արմաշի գյուղական
բժշկական տեղամասի վարիչ



Այդ հարցի կապակցությամբ խմբագրությունը Երևանից ստացել է նաև բժիշկ Հովհ. Հովհաննիսյանի նամակը։ Բժիշկ Հովհաննիսյանը գրում է.

— Ծանոթանալով «Լենինյան ուղիով» ամսագրի № 7-ում զետեղված ակնարկին, ուր խոսվում է նաև ստամոքսահյութի միջոցով միզաքարերը հեռացնելու վերաբերյալ բժիշկ Ա. Հայրյանի փորձերի մասին, գտնում եմ, որ դրանք սկզբունքով չափազանց ճիշտ են, տրամաբանական և հնարավոր։ Անհրաժեշտ են միայն գիտական լայն հիմքի վրա դրված փորձեր։

Հիրավի, եթե աղերը կարող են մարդու օրգանիզմում առաջացնել քարեր, ապա վերջինները կարող են և՛ լուծվել։ Այդ հարցերը քիմիան վաղուց է դրականորեն լուծել։ Բժշկական պրակտիկան ետ է մնացել, չնայած այդ պրոբլեմի լուծման համար մենք ունենք գործիքային անհրաժեշտ բազա։

Հարկավոր են բիոլոգների, ֆիզիոլոգների, պատալոգ-անատոմիստների, վիրաբույժների համատեղ ջանքերը այդ պրոբլեմը մշակելու համար։ Այդ հարցը լուծելի է և պետք է լուծել։ Դրան վաղուց սպասում են հազարավոր հիվանդներ։ Մեր կողմից առաջին քայլերն են արված միզապարկի լորձնույթների կայունությունը որոշելու համար։ Բայց դա քիչ է։ Հարցը պետք է մշակել և ստուգել բոլոր դետալներով։ Հասարակայնությունը պետք է աջակցի բժշկական գիտությունների թեկնածու, տեղամասային բժիշկ Ա. Հայրյանի նախաձեռնությանը։

ՀՈՎՀ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Բժիշկ, Ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի
ինստիտուտի ավագ գիտաշխատող

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Տպագրելով բժիշկներ Ա. Հայրյանի և Հովհ. Հովհաննիսյանի նամակները, ամսագրի խմբագրությունը հուսով է, որ Հայկական ՍՍՌ Առողջապահության մինիստր ընկ. Զ. Նարիմանովը և գիտահետազոտական հիմնարկները պայմաններ կստեղծեն ընկ. Հայրյանի մտահղացումն իրականացնելու համար։ Որքան շուտ, այնքան լավ։

## ՊԱՐՏԱՃԱՆԱՉ ԱՇԽԱՏՈՂՆԵՐ

Կան մարդիկ, որոնք կատարում են համեստ աշխատանք ու երբեք ձգտում չունեն ցուցադրելու իրենց՝ ի տես ամենքի։ Մենք էլ հաճախ չենք տեսնում նրանց, իսկ իրենք տեսնում են մեզ, բոլորիս համար աշխատում։

Այդպիսին են մամուլի տարածման լիազորները՝ Թելման Կարապետյանը (Հոկտեմբերյանի շրջան), Արշակ Հայրապետյանը (Էջմիածնի շրջան), Արարատ Թովմասյանը (Կոտայքի շրջան), Եպրաքսիա Մկրտչյանը (Արտաշատի շրջան), Ապոլինա Լազրևան (Ալավերդու շրջան) և ուրիշներ։ Թվում է, թե նրանք զբաղվում են միայն ինչ-որ ստանդարտ ձևեր լրացնելու և դրանք բաժանորդին ուղարկելու գործով։ Դե, իհարկե, մտածում ենք, ուրիշ ի՞նչ կա անելու։

Բայց ոչ, նրանք ուրիշ գործեր էլ ունեն։

Երբեմն կտեսնես Արարատ Թովմասյանին մթագնած, թավ հոնքերի տակ տխրամած աչքերը ասում են, որ գործերը հաջող չեն։ Նա արագ քայլերով շտապում է կապի գրասենյակի պետի մոտ։

— Հը, էլի ի՞նչ է պատահել, երիտասարդ, կարծում եմ գործերդ հաջող են,— դիմում է նրան վերջինս,— կրպակների թիվը հասցրիր տասներկուսի, շրջանի ամեն մի 1000 բնակիչը ստանում է 600 թերթ ու ամսագիր, ավելի՞ն էիր ուզում։

— Այո՛,— հրացայտ աչքերը խոսակցին է հառում Արարատը, 1948 թվականից մինչև այժմ ես աշխատում եմ որպես մամուլի տարածման լիազոր, հանդիպել եմ շատ-շատ բնավորությունների, կարդալ չցանկացողների, բոլորի հետ «լեզու եմ գտել», համոզել եմ, որ իրականության մեջ կույր չմնալու համար պետք է մամուլից ոչ մի օր չկտրվել, ստանալ ու կարդալ այն։ Իսկ այսօր հանդիպեցի մեկին, որ ոչ մի թերթի ու ամսագրի չի ուզում բաժանորդագրվել։

— Մի հուզվիր, երիտասարդ, այդպիսիներն էլ կան, որոնց հետ դժվար է գլուխ հանել։ Դու օգնության կանչիր Թելման Կարապետյանին՝ Հոկտեմբերյանի լիազորին, իմացիր, այդպիսիների հետ նա ինչպես է վարվում։

— Ի՞նչ է, փորձի փոխանակությո՞ւն պիտի կատարեմ։

«շարք են կանգնում» առավոտյան ժամը 3-ին։ Նրանք այդտեղ են եկել աշխատանքի շուկայում իրենց վաճառելու համար։ Աշխատուժ վարձող գործակալները բարձր գոչում են գործավարձի կամ ժամավարձի դրույքները։ Կալիֆոռնիայի որոշ շրջաններում պետական ռադիոցանցով կանոնավոր կերպով հայտարարություններ են հաղորդվում 100 ֆունտ կամ մեկ կողով միրգ հավաքելու համար տրվող ընթացիկ գնի մասին։

Հենց որ բանվորը աշխատանքի է վարձվում, նրան ուղարկում են դաշտ աշխատելու։ Բեռնատար ավտոմեքենաները լցնում են մինչև վերջը. անվտանգության կանոնները հաճախ անտեսվում են. ճանապարհի վրա ծախսված ժամանակի համար չեն վճարում։ Ես հիշում եմ, թե ինչպես Ստոկտոնից հարավ Սանտա-Բարբարա քաղաքի մերձակայքի ծովափին ես տեսա մի միանգամայն աներևակայելի կոնտրաստ. պլյաժի գեղեցիկ երիզ, անմիջապես ծովափին մոտեցող լեռներ, հարուստ տներ և դրանց կողքով անցնող բեռնատար ավտոմեքենաներ՝ լեփ-լեցուն աշխատանքից վերադարձող մեքսիկացի թափառական բանվորներով։

Ստոկտոնում շատ բանվորներ ապրում են գիշերօթևաններում։ Նրանք սնունդն ստանում են բարեգործական միսիաներում։ Երբ մեքսիկացիները չափազանց շատ են գալիս և ոմանց սկսում են հեռացնել աշխատանքից, մարդիկ հաճախ կերակուր չեն ունենում 2 կամ 3 օր։

Ստոկտոնից հարավ, Իմպերիալ-վելիում կյանքը է՛լ ավելի սարսափելի է, քան այդ քաղաքում։ Բարեկամներիցս մեկը պատմեց ինձ, թե մարդիկ ինչպես են ապրում այնտեղ։ Մի ընտանիք, գրում էր նա, ապրում է քողտիկում և քնում գետնին ստվարաթղթե արկղների վրա։ Ոչ մի ջեռուցում չկա և, քանի որ այդ տնակում ապրող մարդը աշխատանքից զրկվել էր մեքսիկացիների պատճառով, չկա նաև ոչ մի ուտելիք։ Մայրը կրծքով կերակրում է ծծկեր երեխային, ինչպես նաև չորս տարեկան երեխային, քանի որ նա միայն այդ ձևով կարող է նրան կերակրել։ (Հիշեցեք Ստեյնբեկի «Ցասման ողկույզներ» գիրքը։ Կինը իր կրծքով կերակրում էր սովից մեռնող մարդուն։ Այդ տեսարանը տեղի է ունեցել գրեթե 30 տարի առաջ։)

Ամբողջությամբ վերցրած, եթե նկատի ունենանք տղամարդկանց, կանանց, երեխաներին, ներառյալ մեքսիկացիներին, մոտավորապես 2 միլիոն մարդ ապրում ու աշխատում են այդ անմարդկային պայմաններում։

«ЗА РУБЕЖОМ», №№
28, 29, 30, 1962 թ.»

---



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции. Ереван, здание
ЦК КП Армении, тел 2—56—92

ՎՖ 09531, Պատվեր 2530 | Տիրաժ՝ 9200 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 26/IX 62 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## 2700 խորանարդ մետր

Սովետական մասնագետների մի խումբ նախագծել է 2700 խորանարդ մետր ծավալ ունեցող դոմենյան հնոց։ Այդ հնոցը երկու անգամ ավելի շատ չուգուն կտա, քան ՍՍՌՄ-ում ներկայումս գործող ամենախոշորագույն հնոցը։ Մեկ օրվա ընթացքում այդ ագրեգատը կտա այնքան մետաղ, որքան հարկավոր է երկու հազար ավտոմեքենայի արտադրության համար։

## Մոտ 11 օրում

Ուստ-Կամենոգորսկի շինարարների համբավը լայնորեն հայտնի դարձավ երկրում։ Այստեղ Ա. Կոպտելովի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադը մոտ 11 օրում ավարտեց հինգ հարկանի, 80 բնակարանանոց տան հավաքումը։ Մեր երկրում խոշոր պանելային տնաշինարարության ասպարեզում սա նոր ռեկորդ է։

## «Կիրովեց» հսկան

Լենինգրադում գործարանային փորձարկում անցավ «Կիրովեց» հսկա տրակտորը։ Նրա հին եղբայրները (յուրաքանչյուրը 220 ձիու ուժ) այժմ գտնվում են երկրի զանազան մասերում՝ նոր փորձարկման մեջ։

Սովետական նորագույն տեխնիկայի այս առաջնեկը հիանալի քննություն է բռնել և լիովին արդարացրել կոնստրուկտորների, ինժեներների ու գյուղատնտեսության մասնագետների հույսերը։

«Կիրովեց» հսկան, որ գլխավորապես նախատեսված է երկրի տափաստանային գոտիների և խոպան տարածությունների համար, բոլոր աշխատանքներում ցուցադրեց իր հզորությունը, դիմացկունությունը և շարժունակությունը։ Մեքենան հիանալի աշխատում է բերքահավաքի և վարուցանքի ժամանակ, վարելիս զարգացնում է ժամում 7, իսկ բեռները փոխադրելու ընթացքում՝ 30 կիլոմետր արագություն։ Այս տրակտորի կառավարման սիստեմը նման է ավտոմեքենայի կառավարման սիստեմին և հուսալի է։

Լենինգրադի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվն այժմ կատարելագործում է նոր մեքենան, հաշվի առնելով փորձարկման արդյունքները։

## ԱՐՕ-ն ազդարարում է՝ անձրև է գալիս

Անձրև։ Հողագործները հաճախ ինչպիսի անհամբերությամբ են սպասում անձրևի։ Երբեմն նաև անձրևները մեծ աղետների պատճառ են դառնում։ Տարերային երևույթները ավելի քան վտանգավոր են, որովհետև տեղի են ունենում հանկարծակի։

Ահա թե ինչու գյուղի աշխատավորներին մեծագույն օգնություն ցույց կտա օդերևութաբանական նոր կայանը՝ ԱՐՕ կոչվող ռադիոհեռուստաչափը, որը ստեղծել են Հիդրոօդերևութաբանական սարքերի գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները։

ԱՐՕ-ն դրվում է բարձր լեռների լանջերին և սակավ բնակեցված վայրերում, այն օգտագործվում է տեղումների քանակի և արագության չափումների ու այդ մասին ռադիոյով ավտոմատիկ հաղորդումների համար։ Ընդունելով կայանի ազդանշանները, կարելի է ստույգ տեղեկանալ, որ անձրև է գալիս այն շրջանում, որտեղ դրված է ԱՐՕ-ն։ Լեռնային տեղանքում դրված այդ նոր սարքերը կարող են նախազգուշացնել նաև մոտալուտ հոսանքների (քամիներ և այլն) մասին։

## Ոչ սովորական հեռախոս

Դուք մտնում եք այն խցիկը, որտեղ դրված է ավտոմատ հեռախոսը, որպեսզի զանգահարեք ձեր ընկերոջը, բարեկամին. սակայն զարմացած նայում եք նոր ապարատին ու տեսնում, որ հեռախոսափող չկա։ Բայց ավտոմատ հեռախոսը աշխատում է և գտնվում է կանոնավոր վիճակում։ Բավական է, որ դուք գցեք դրամը, ապա հեռախոսի ապարատում դրված բարձրախոսը ազդանշան կտա, թե այն խոսակցության համար պատրաստ է։ Դուք հավաքեք ցանկացած համարը և բարձրախոսից կլսեք հեռախոսին մոտեցող մարդու ձայնը։ Եթե բաժանորդը չպատասխանեց, կամ համարն զբաղված է,

(Շարունակությունը հաջորդ էջում)

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(Սկիզբը նախորդ էջում)

*ապա հարկավո՛ր է սեղմել կոճակը, և ավտոմատը կվերադարձնի ձեր դրամը:*

*Այս ոչ սովորական հեռախոսի ապարատը ստեղծել են քաղաքային և գյուղական հեռախոսային կապի Լենինգրադի գիտահետազոտական ինստիտուտի աշխատողները:*

*Այժմ այդ նոր հեռախոսը փորձարկվում է Մոսկվայի Կենտրոնական հեռախոսային ցանցում:*

### Ավտոմատը տուն է կառուցում

*Զարմանալի գործեր են կատարվում Կամուրջների կառուցման գլխավոր վարչության գիտահետազոտական ինստիտուտի փորձարկումների հրապարակում: Այստեղ մշակված է ավտոմատ կերպով տուն կառուցելու տեխնոլոգիան:*

*Հրապարակում կանգնած է ամբարձիչ կռունկը: Այն սովորական կռունկներից համարյա չի տարբերվում. բայց որտե՞ղ է կռնկավարը: Նա մեքենայի վրա չէ: Նրա տեղը գրավել է էլեկտրոնային սարքը, որը լավ «հիշում է» տան՝ առաջինից մինչև վերջին մասերի հավաքման կարգը:*

*Այդ հրաշագործ կռունկը ղեկավարվում է ռադիոյով: Տան մոնտաժողի կրծքին կա փոքրիկ ռադիոհաղորդիչ: Բավական է, որ նա սեղմի «գործարկել» կոճակը, և կռունկը կսկսի տան հերթական մասի փոխադրումը և տեղադրումը: Մեքենան ոչ մի սխալ թույլ չի տալիս: Ավելին, խելացի մեխանիզմը և ոչ մի սխալ հրաման չի կատարում:*

*Եթե կռունկի վրա երևան գա որևէ կոտրվածք, ապա մեքենան իր վթարային վահանիկի վրա ցույց կտա, թե ինչ է պատահել:*

*Հեռու չէ այն օրը, երբ նման կռունկներ երևան կգան շինարարական հրապարակներում:*

### Ջուր տաքացնող էլեկտրական սարք

*«Խարպլաստմասս» (Խարկով) գործարանը մի հետաքրքրական սարք է պատրաստել ջուրը էլեկտրականությամբ տաքացնելու համար: Ձեռքի ափի մեջ տեղավորվող այդ սարքը շատ հարմար է օգտագործման համար: Անհրաժեշտության դեպքում այն ամրացվում է ջրմուղի ծորակին, էլեկտրալարը՝ 220 վոլտ հզորություն ունեցող էլեկտրացանցին: Սարքի միջով անցնող ջուրը տաքանում է մինչև 60—70 աստիճան: Այս նոր հարմարանքը կարող է մեկ ժամում տաքացնել 25 լիտր ջուր:*

### Ուլտրամանիշակագույն լամպեր դասարանում

*ՍՍՌՄ Բժշկական գիտությունների ակադեմիայի ընդհանուր և կոմունալ հիգիենայի ինստիտուտում փորձարկում են այնպիսի լամպեր, որոնք պետք է փոխարինեն արևին: Մեր արդյունաբերությունն սկսել է թողարկել, այսպես կոչված, էրիթեմային լյումինեսցենտային լամպեր: Դրանց արձակած լույսի մեջ կան ուլտրամանիշակագույն ճառագայթներ, որոնք դրական ազդեցություն են թողնում մարդու օրգանիզմի վրա:*

*Այդ ինստիտուտի լաբորատորիայի աշխատակիցներ Արիադնա Զաքուլուկան և Զոյա Սկոբարևան փորձով համոզվել են, որ արհեստական ուլտրամանիշակագույն ճառագայթումը ամրապնդում է երեխաների առողջությունը, բարելավում է ընդհանուր վիճակը, ախորժակը, քունը, ինքնազգացողությունը: Այդ ճառագայթներն ընդունած աշակերտներն ավելի հազվադեպ են հիվանդանում գրիպով, վերին շնչառության ուղիների կատարով, անգինայով:*

*Անցյալ ձմռանը Մոսկվայի դպրոցներից մեկի դասասենյակում դրվեցին 15 վատտ հզորության էրիթեմային լամպեր: Նոյեմբերից մինչև ապրիլ ամիսը առաջին և երկրորդ դասարանների աշակերտները լինում էին այդպիսի ճառագայթների տակ: Նախքան ճառագայթներ ստանալը՝ աշնանը և ճառագայթներ ստանալուց հետո՝ գարնանը երեխաները մանրազնին քննության են ենթարկվել: Պարզվել է, որ ճառագայթումներից հետո երեխաների առողջությունն զգալիորեն լավացել է:*